1916 № 42.—Հոկտեմբերի 16 ԱՌԱՋԻՆ ՏԱՐԻ

# ՀԱՄԲԱՒԱԲԵՐ

ՀԱՍԱՐԱԿԱԿԱՆ-ԳՐԱԿԱՆ ՇԱԲԱԹԱԹԵՐԹ

ԿՈՎԿԱՍԻ ՀԱՅՈՑ ԲԱՐԵԳՈՐԾԱԿԱՆ ԸՆԿԵՐՈՒԹԵԱՆ

10 ԿՈՊԷԿ — ԼՈՅՍ Է ՏԵՍՆՈՒՄ ԿԻՐԱԿԻ ՕՐԵՐԸ — 10 ԿՈՊԷԿ

**ԲԱԺԱՆՈՐԴԱԳԻՆԸ** տարեկան 4 րուբլի, կէս տարուան 2 ր. 50 կ.։ Բարեգործական Ընկերութեան անդամների, հայ դպրոցների, ուսուցիչների հասարակական հիմնարկութեանց համար՝ տարեկան 3 ր., կէս տարուան 2 ր.։ Արտասահման՝ տարեկան 5 ր., կէս տարուան 3 ր.

**ԽՄԲԱԳՐՈՒԹԻՒՆԸ՝** Թիֆլիս, Արտատրադեան հրապար. № 7.
**Ձեռախօս № 29.**

Պոստի հասցէն.—Тифлисъ, „Амбаваберъ“. Tiflise, Rédaction du journal „Hambavaber“.

**ՅԱՅՏԱՐԱՐՈՒԹԻՒՆՆԵՐ՝** տողին 10 կոպ.
Խմբագրութիւնը բաց է առաւօտեան ժամի 10—2 բացի կիրակի և տօն օրերից։
Տպագրելու ուղարկուած ձեռագրերը կարող են ենթարկուել փոփոխման և կրճատման։
Տպագրութեան համար անյարմար ճանաչուած մեծ յօդուածները պահւում են վեց ամիս խմբագրատանը, իսկ փոքրերն անմիջապէս ոչնչացւում։
Տպագրութեան համար անյարմար թղթակցութեանց և յօդուածների առթիւ խմբագրութիւնս պարտաւոր չի համարում գրաւոր բացատրութիւններ տալ։

## ԲՈՎԱՆԴԱԿՈՒԹԻՒՆ



## ՊԷՏՔ Է ՊԱՐՏԱՃԱՆԱՉ ԼԻՆԵԼ։

*Հայ ժողովուրդի ներկայ կացութիւնը համաշխարհային պատերազմի շնորհիւ բացառիկ է իր ծանրութեամբ և դառնութեամբ։*

*Տաճկահայաստանը աւերուեց և նրա աշխատասէր ժողովուրդը այժմ թափառում և տառապում է օտարութեան մէջ։ Կովկասի հայութիւնը էլ չէ կարող պարծենալ իր բաղդաւոր վիճակով. ամբողջ երիտասարդութիւնը համարեա և առհասարակ աշխատանքի ընդունակ մասը պատերազմի դաշտումն է. Մնացողները մեծ մասամբ ծերունիներ, կանայք և երեխաներ են։*

*Կեանքի ծանրութիւնը զգալի է մանաւանդ գիւղերում. հողը մշակող, վարուցանք անող չը կայ, տաւարը պահող չը կայ։*

*Ահա՝ թէ ինչու ժողովուրդի մէջ յաճախ նկատւում է մի կողմից հոգեկան լքում և վհատութիւն, միւս կողմից անտեսական կատարեալ քայքայում։*

*Սակայն մեր ժողովուրդի մէջ կայ մէկ տարր, որ անման է ընդհանուրի վիճակին, որ այս տխուր օրերին էլ իրեն երջանիկ է զգում, որին պատերազմը միայն բաղդ է բերել։*

*Այդ տարրը կազմում են վաճառականները, մասամբ էլ կալուածատէրերը և դրամատէրերը։*

*Պատերազմը առաջ բերեց առասպելական թանգութիւն, և առասպելական օգուտներ քաղեցին միայն վաճառականները, դրամատէրերը և կալուածատէրերը։ Հարուստները կրկնապատկեցին, եռապատկեցին իրենց կարողութիւնը, նոյն իսկ մանր կամ ոչնչութեան դռան կանգնած վաճառականներ դիզեցին խոշոր գումարներ։ Եւ այսօր դրանք շուկայում և հասարակական տեղերում երևում են հպարտ, ուրախ և ինքնահաւան դէմքով, վայելում են պատիւ, ստացել են փողով ստեղծուած դիրք։*

*Բայց ինչ բարոյական արժէք ունի անհատական նիւթականի վրայ հիմնուած բաղդաւորութիւնը, երբ շուրջը տիրում է թշուառութիւն, երբ շուրջը տառապում է հացի, շորի և ուման կարօտ ժողովուրդը։*

*Բաւական է մի լուրջ շրջահայեացք, որ մարդ սոսկայ և համոզուի, թէ ինչ աստիճանի աննախանձելի է հայի իրականութիւնը։*

*Թէ Կովկասի հայութիւնը և թէ հայ գաղթականները համահաւասար նեղ դրութեան մէջ են։*

*Ճիշտ է, գաղթականները ստանում են կառավարութիւնից նպաստ և որբերի համար հիմնուած են ապաստա-*

բաններ, բայց միևնոյն ժամանակ յայտնի է, որ նպաստների չափը նուաղ է և այժմեան թանգութեան չէ համապատասխանում, որ նպաստ ստանում են ոչ բոլորը, որ ապաստարանների որբերի թիւը սահմանափակուած է։

Ահա՛ թէ ինչու միշտ կարելի է նկատել, որ քաղաքներում ու գիւղերում գաղթականները թափառում են կիսաքաղց, կիսամերկ, որ բազմաթիւ որբեր մնացել են դուրսը, անտէր, առանց խնամքի։

Իսկ եթէ մտնէք մեր գիւղերը, կը տեսնէք, թէ ինչ թշուառութիւն ու աղքատութիւն է տիրում գիւղական խրճիթներում. չը կայ աշխատող ձեռք, երեխաները բոբիկ, կիսամերկ և դպրոցների դռները փակ. բացակայում է այն աշխատաւոր գիւղացութիւնը, որը պահում էր դպրոցը իր աշխատանքով իր զաւակների լուսաւորութեան համար։

Մի տխուր երևոյթ ևս, որ անկարելի է անտես առնել, որը արժանի է առանձին ուշադրութեան։

Պատերազմի հեռանկարը գիւղերից և քաղաքներից դուրս քաշեց շատ երիտասարդ ոյժեր. կազմուեցին հայ կամաւորական խմբեր, անցան պատերազմի դաշտը՝ վրէժ առնելու դարաւոր թշնամուց և աջակցելու Հայաստանի ազատութեան։

Այդ քաջարի երիտասարդներից ոմանք ընկան պատերազմի դաշտում, զոհելով իրենց կեանքը հայրենիքի համար, ոմանք էլ վերադարձան իրենց տուն հաշմանդամ, աշխատանքի ընդունակութիւնից զրկուած։ Այդ գաղափարական զոհերից շատերի ընտանիքները մնացել են զուրկ նիւթական միջոցներից, և եթէ հասարակութիւնը նրանց օգնութեան չը հասնի, նրանց մնում է մուրացկանութեան դիմել։ Բայց միթէ կարելի է հաշտուել այդ մտքի հետ. միթէ այդ դէպքում չի շօշափուիլ հայի պատիւը։ Շատ չէ անցել այն օրուանից, երբ հայ ազգը ոգևորութեամբ ողջունում էր հայ կամաւորների քաջագործութիւնը, երբ պարծենում էր նրանցով։

Պատերազմի սկզբում հայ ազգը խանդավառութեամբ սկսեց ժողովարարութիւններ անել կամաւորական խմբերի համար, առատ նուէր տուեց և գաղթականների օգտին, երբ սկսուեց գաղթականութիւնը։ Բայց երբ կառավարութիւնը իր վրայ վերցրեց կամաւորական խմբերի ծախսերը որոշ չափով, երբ նոյն կառավարութիւնը սկսեց նպաստներ տալ գաղթականներին և գաղթականական որբանոցներին, նուիրատուութիւնները խսպառ ցամաքեցին, չքացան։ Հայ հարուստը մոռացաւ իր ազգային և հասարակական պարտականութիւնը, խուլ և համր ձևացաւ աղաղակող կարիքների առաջ։

Բացառութիւնները եզակի են։

Ցաւալի երևոյթ։

Ժամանակ է ըմբռնելու, որ հարուստ հայը ոչինչ է առանց իր հայ ժողովուրդի. ժամանակ է հասկանալու, որ հարուստի բարոյական արժէքը և պատիւը հենց այն է, որ նա իր ունեցածի մի որոշ բաժինը մանաղրում է իր ազգի նիւթական, բարոյական և կրթական կարիքներին։

Եթէ հարուստի առաջ մերկ ու քաղցած կը մնան նրա արիւնակիցները, եթէ նրա առաջ փակ կը մնան մատաղ սերնդի լուսաւորութեան տաճարի դռները նիւթականի պատճառով. եթէ, վերջապէս, նրա գութը չեն շարժիլ փողոցներում թափառող մերկ ու անտէր հայ որբիկները, այն ժամանակ պէտք է ողբալ, որ մեր մէջ կայ այդ տեսակ քարասրտութիւն և բարոյական կուրութիւն։

Մենք ապրում ենք շատ լուրջ ժամանակաշրջանում։

Հարկաւոր է սթափուել, հարկաւոր է ընդառաջ գնալ մեր ազգային բազմատեսակ ցաւերին. հարկաւոր է աջակցել մեր ազգային հաստատութիւններին, որոնք կոչուած են ամոքելու հայի թշուառութիւնը, և բարձրացնել նրան բարոյապէս և մտաւորապէս։

Պէտք է պարտաճանաչ լինել։

Ս. Ց.

# Համաշխարհային պատերազմը

## ՏԱՃԿԱԿԱՆ ՌԱԶՄԱԲԵՄԸ

Կովկասեան ճակատում ընդհանուր առմամբ վերջին ժամանակներս տիրում է խաղաղութիւն։ Ոչ ռուսները և ոչ էլ թիւրքերը հակումն չեն ցոյց տալիս ներգործական գործողութիւնների անցնելու։ Գուցէ այստեղ դեր են կատարում ցրտերը, գուցէ նաև այլ հանգամանքներ։

Վերջին շաբթուայ ընթացքում տեղի ունեցած թեթև գործողութիւնները հետևեալներն են.—Երզնկայից 60 վերստ հարաւ-արևելք քրդական ուժեղ հրոսակախմբեր փորձ են անում գրաւել Սէիդ դաղը, սակայն անյաջողութեան են հանդիպում։ Բալքիթից հարաւ-արևելք ռուսները ոչնչացնում են թշնամու պահակախմբերից մէկը, իսկ Մուշից հարաւ-արևելք ռուսական պահակախումբն է ենթարկւում թշնամու յարձակմանը և մի կերպ ազատւում։ Վանից հարաւ-արևելք էլ տեղի է ունեցել մի թեթև ընդհարում քիւրդ հրոսակախմբերի և ռուսների միջև, որի ժամանակ վերջիններս խլել են թշնամուց մի քանի հարիւր գլուխ տաւար։ Բացի այդ ամբողջ ռազմաճակատի վրայ տեղի են ունեցել հետախոյզ խմբերի մի շարք թեթև ընդհարումներ։

Պարսկական ճակատում մի աղակիր քարաւան են գերել ռուսները Դամբորի մօտ, խլելով թշնամուց բաւական քանակութեամբ ձիեր և ռազմամթերք։

## ԱՒՍՏՐՈ-ԳԵՐՄԱՆԱԿԱՆ ՌԱԶՄԱԲԵՄԸ

Ռուսական ճակատում խիստ արիւնահեղ կռիւներ տեղի ունէին այս շաբաթ հարաւ-արևմտեան գծերի վրայ։ Դորնա-Վատրայի շրջանում, Սվիստելնիկից հարաւ, Կուրոպատնիկից հիւսիս և մի շարք այլ վայրերում աւստրո-գերմանները կատաղի յարձակումներ էին գործում՝ ռուսներին դիրքերից յետ շպրտելու ակներև դիտաւորութեամբ։ Իր ռազմական ծրագիրը յաջողեցնելու համար թշնամին լայն չափերով օգտւում էր թունաւոր գազերից։ Սակայն չնայած այս բոլորին՝ ռուսները ոչ միայն պահում են իրենց գլխաւոր դիրքերը, այլև Լամաժտել լերան բարձրունքներից յարձակուելով թշնամու վրայ՝ դուրս են մղում նրան մի շարք ամուր դիրքերից և խլում 4 գնդացիր։ Շաբաթուայ ընթացքում ռուսների գերած մարդկանց թիւը մի քանի տասնեակ հոգուց չի անցնում։

Ֆրանսական ճակատում շաբթուայ սկզբին կռիւներ կային միայն Սոմմի գծի վրայ։ Այս գետից հիւսիս ֆրանսացիք գրաւել են Սայլի-Սայիզել գիւղը, որի համար անցեալ

շաբաթ արիւնահեղ կռիւներ էին մղւում։ Թշնամու բոլոր փորձերը յետ խլելու գիւղը ապարդիւն անցան։ Սոմմից հարաւ ֆրանսացիք փոքր ինչ առաջ են գնացել Շոն անտառում։ Շաբաթուայ ընթացքում այս գծի վրայ նրանք գերել են մօտ 1000 գերմանացի։

Վերջին պահուն հեռագիրը մի ուշագրաւ տեղեկութիւն բերեց այս ճակատից։—Ֆրանսացիք մօտ 7 քիլոմետր ռազմագծի վրայ պատռել են գերմանական ամրութիւնների շղթան, գրաւել Վերդէնի նշանաւոր ամրութիւն Դուոմոնը համանուն գիւղի հետ։ Այսպիսով այն ամրութիւնը, որին տիրելու համար գերմանացիք հսկայական զոհեր տուին անցեալ գարնանը, այժմ վերստին անցել է ֆրանսացիների ձեռքը, ինչպէս հեռագրումն է ասուած, չնչին զոհերի գնով։ Դուոմոնի գրաւումով ֆրանսացիք սեպի պէս ցցւում են գերմանական թագաժառանգի բանակի մէջ։ Նրանք առայժմ հաշուել են 3,500 գերի, որոնց մէջ 100 սպայ։ Սակայն հաւանական է, որ այս թիւը աւելի մեծ լինի, ի նկատի ունենալով, որ ֆրանսացիք տեղ-տեղ երեք քիլոմետրաչափ առաջ են անցել, իրենց յետևը թողնելով գերմանական խրամատների ահագին ցանցեր։ Վերդէնի այս յաջողութիւնը ֆրանսացիք անշուշտ պարտական են Ռումանական սահմանի և Սոմմի շրջանի պատերազմական գործողութիւններին, որոնք ստիպել են գերմանացիներին թուլացնել Վերդէնի գիծը։

Անգլիական ճակատում շարունակւում է դաշնակիցների դանդաղ առաջխաղացութիւնը Սոմից հիւսիս՝ Հեդեկուր-լըբեօֆ գծի վրայ։ Թշնամու բոլոր հակայարձակումներն այս գծի վրայ յետ են մղուած։ Շաբթուան ընթացքում անգլիացիք գերել են մօտ 1000 գերմանացի։

Իտալական ճակատում պատերազմական գործողութիւններ կային գլխաւորապէս Մոնտէհրազուբիօի շրջանում։ Աւստրոհունգարները մի շարք յարձակումներով աշխատում էին տիրանալ այս շրջանին, բայց ամեն անգամ ծանր կորուստներով յետ էին մղւում։ Այս կռիւներում իտալացիք գերել են թշնամուց 320 հոգի, որոնցից 30-ը սպայ։ Բացի այդ խլել են մի քանի գնդացիր և թնդանօթ։

Ռումանական ճակատում գերմանները գրեթէ բոլոր գծերի վրայ յետ են մղել դաշնակիցներին մինչև ռումանական սահմանները, իսկ հիւսիս-արևմտեան գծերի վրայ մի երկու տեղ մինչև անգամ անցել են սահմանը և առաջացել 10—15 վերստ։ Ռումանները հերոսական դիմադրութիւն են ցոյց տալիս, որի շնորհիւ թշնամու առաջխաղացութիւնը՝ համեմատաբար դանդաղ է կատարւում։ Թշնամին աշխատում է տիրանալ Բուքրէշ տանող ճանապարհներին։

## ԲԱԼՔԱՆԵԱՆ ՌԱԶՄԱԲԵՄԸ

Սալոնիկի ճակատի ձախ թևի վրայ սերբերը շարունակում են իրենց առաջխաղացութիւնը։ Այս շաբաթ նրանք գրաւել են մի քանի գիւղ, խլել են թշնամուց 7 թնդանօթ և գերել մօտ 250 մարդ։ Ինչպէս անցեալ շաբաթները, այնպէս և այս շաբաթ սերբ-բուլգարական կռիւները աչքի էին ընկնում իրենց դաժանութեամբ։

Ֆրանսական գծերի վրայ այս շաբաթ դաշնակիցներն առաջ են անցել Գևգելիի շրջանում՝ խլելով բուլղարներից մի շարք խրամատներ։

Անգլիացիք իրենց գծերի վրայ գրաւել են այն տարածութիւնը, որ գտնւում է Ստրումայի և երկաթուղու գծի միջև։

Ալբանական ճակատում իտալացիք դուրս են եկել Եանինա-Գուրիցա մեծ ճանապարհը և գրաւել Լասկովիչը։ Այս շաբաթ արդէն կապ է հաստատուել ալբանական և Սալոնիկի ճակատների միջև։

Դոբրուջայի ճակատում գերմանաբուլղարական առաջխաղացութիւնը սպառնալի բնոյթ ստացաւ։ Աստիճանաբար դուրս մղելով ռուսներին և ռումաններին իրենց դիրքերից թշնամիները մի քանի օր առաջ գրաւեցին Կոստանցա (Կիւստենջէ) և Մէջիդիէ քաղաքները, իսկ ըստ վերջին պաշտօնական հաղորդագրութեան՝ դաշնակիցները դուրս են մղուած մինչև անգամ Չերնովոդի—Թասաուլու լիճ ամուր դիրքերից։ Թէ մինչև ուր պէտք է շարունակուի թշնամիների առաջխաղացութիւնը—առայժմ դժուար է ասել։ Ռուսները և ռումանները ամեն ջանք գործ են դնում թշնամիներին կասեցնելու համար և այդ պատճառով էլ Դոբրուջայի ճակատի կռիւները չափազանց արիւնահեղ բնոյթ ունին։

## ԾՈՎԻ ՎՐԱՅ

Գերմանական սուզանաւերի սխրագործութիւնները շարունակւում են։ Այս շաբաթ նրանց զոհ դարձան գլխաւորապէս Նորվեգիական նաւերը։ Այս առթիւ Նորվեգիայի հասարակական կարծիքը անչափ յուզուած է։

⁂

## ՔԱՂԱՔԱԿԱՆ ԼՈՒՐԵՐ

ՅՈՒՆԱՍՏԱՆ. — Ի նկատի ունենալով որ Սալոնիկում կազմւում է նոր կաբինետ, Ռուսաց կառավարութեան արտաքին գործերի նախարարը առաջարկել է ընդհանուր դեսպան Կալին գործնական հաղորդակցութիւն սկսել Վենիզելոսի կառավարութեան հետ. միաժամանակ վճռուած է յարաբերութիւնը չխզել թագաւորական կառավարութեան հետ, մինչև որ պարզուի նոր կազմուող կաբինէտի ուղղութիւնը։

—Ինը վերատեսուչներ (директоръ), որոնք մտնում են ժամանակաւոր կառավարութեան կազմի մէջ, երդուեցին ազգային եռապետութեան ներկայութեամբ։ Այդ արարողութիւնից յետոյ կայացաւ նախարարների խորհրդի երկարատև նիստը։ Դեպարտամենտի վերատեսուչների պաշտօնական ցուցակը հրատարակուած է առաւօտեան, համապատասխան երէկուայ հաղորդածի, բացառութեամբ Ալէքսանդրիսի, որը հրաժարուեց ընդունել ներքին գործերի նախարարի պաշտօնը, որին փոխարինեց Սոֆուլիսը։ Աւերովը ընդունեց ազգային լուսաւորութեան նախարարի պաշտօնը. Սիմոսը յանձն առաւ զօրակոչի կանչուածների ընտանիքների և փախստականների հոգատարութիւնը։ Կաբինէտի նախարարներ համարւում են՝ պատերազմականը—գեներալ Զիմբրակակիսը և Պոլիտիսը—արտաքին գործերի. միւսները անուանւում են վերատեսուչներ և ոչ-նախարարներ։ Ծովային նախարարի պաշտօնը ժամանակաւորապէս մնում է բաց։ Նախարարները և վերատեսուչները իրենց պարտաւորութիւնները կատարելու են համաձայն Յունաստանի թագաւորութեան օրէնքների, մինչև որ փոփոխուին ժամանակաւոր կառավարութեան հրամանագրերի միջոցով։

—Վենիզելոսի կառավարութիւնը շուտով հրատարակելու է ընդհանուր զօրահաւաք Նոր Յունաստանում։

—Վենիզելոսի կառավարութիւնը տնտեսական դրութիւնը ամրապնդելու և Բուլգարիայի դէմ պատերազմ մղելու համար պէտք է փոխառութեան դիմէ։

—Վենիզելոսը ուղարկեց Սոֆիա վերջնագիր (ультиматумъ)։

—«Биэж. Вѣд.» հաղորդում է, որ «Ֆէտիս» ականակիրը, որը ուղեկցում էր այն նաւին, որը Վենիզելոսին Սոլուն էր տանում, ապարդիւն ռմբակոծուեց տաճկական պատերազմական նաւից Քիոսի նեղուցից անցնելու ժամանակ։

—Իմբրոս և Իկարա կղզիները ճանաչեցին ժամանակաւոր կառավարութիւնը։

—«Рѣчь»-ին հաղորդում են, որ Վենիզելոսը յոյս ունի հաւաքելու 150,000 կամաւոր։ Կոստանդին թագաւորը բրիտանական դեսպանին հաւատացրել է, որ ոչ մի դաւադրութիւն չկայ դաշնակիցների դէմ և պատրաստակամութիւն է յայտնել յետ կանչել Լարիսսա ուղարկած զօրքերը։

—Սոլուն վերադարձաւ Սերբիայի թագաւորազն Գէորգը, որը բժշկւում էր Ֆրանսիայում Բելգրադում ստացած վէրքից։ Թագաւորազն գնաց պատերազմի բեմը։

—Աթէնքում տեղի ունեցաւ ֆրանսական և իտալական պահակախմբերի ժամանումը՝ ապահովելու Համաձայնութեան հպատակներին պահեստի զինուորների անկարգութիւնից։ Ֆրանսացիները այստեղ գրաւեցին Կաստելլօ ամրութիւնը։ Հաստատւում է այն լուրը, թէ Կոստանդին թագաւորը զօրքի մի մասով մտադիր էր հեռանալ Լարիսսա։

—Դաշնակիցների վերահսկողութիւնը տարածւում է նաև Յունաստանի հեռագրի և երկաթուղիների վրայ։

—Ֆրանսիայի բարձր սպաները նշանակուած են Յունաստանի ոստիկանութեան և ժանդարմերիայի գլխաւորներ։ Թագաւորը հրաւիրեց անգլիական դեսպանին և բացատրութիւն տուեց Թէսալիայում կենտրոնացած զօրքի և պատերազմական ռազմամթերքի մասին։ Նա ակնարկեց, թէ պատրաստ է յետ կանչելու զօրքի կէսը Թէսալիայից և ուղարկելու նրանց Յունաստանի ուրիշ կողմեր։

—

ՌՈՒՄԻՆԻԱ.—«Новое Время»-ն ենթադրում է, թէ Ռումինիայի և Մակեդոնիայի պատերազմի բեմում գտնուած թշնամու ուժերը հասնում են 520,000 հոգու, որոնցից 201 ջոկատ (բատալիոն) բուլղարացի, 6 (?) գերման և 22 տաճիկ զօրք։ Մոնաստերի ճակատում գտնւում են 85 ջոկատ։ Գերմանիան և Աւստրիան ուղարկել են Տրանսիլվանիա 170 ջոկատ և 20 ջոկատ Դոբրուջա, ուր գտնւում են Փոքր Ասիայից եկած տաճիկ զօրքերը։

—«Рѣчь»-ը հաղորդում է, որ թիւրք զօրքերը հասան Սերասի մօտերը բուլղարացիներին օգնելու։

—Բոլգարները համոզուելով որ կը յաղթուեն, կռւում են կատաղաբար։ Խրամատները շինուած են գերմանական ձևով։ Սպաների մէջ կան շատ գերմանացիներ։ Անշուշտ բուլղարացիները ուժեղ հակառակորդներ են, որոնց չըգնահատել չի կարելի։

—

ԱՒՍՏՐՈՒՀՈՒՆԳԱՐԻԱ. — Շտիւրկի սպանութիւնը. — Այն պահուն, երբ նախագահ-նախարար Շտիւրկը ճաշում էր Մեբանի «Մէյսլունդշադն» հիւրանոցում, մօտեցաւ գրող Ֆրիդրիխ Ադլէրը և երեք անգամ արձակեց ատրճանակը։ Շտիւրկը անմիջապէս վախճանուեց։

Ադլէրը մինչև պատերազմը գլխաւոր խմբագիրն էր «Դասֆոլկ»-ի, որ պատերազմից յետոյ դադարեց։ Յետոյ Ադլէրը հրատարակում էր ընկերվարական «Դէր Կամպֆ» ամսագիրը և միևնոյն ժամանակ վարում էր քարտուղարութիւնը գերմանական ընկերվարական կուսակցութիւնում և համարւում էր ծայրայեղ արմատական. բայց նա ունէր շատ քիչ կողմնակիցներ։ Շտիւրկի սպանութիւնը նորա ձեռքով համարում են մոլեռանդութեան գործ։

Իրարանցման ժամանակ Ադլէրը կարող էր թագնուել, բայց նա մնաց անշարժ, պահպանելով արտաքին հանգստութիւնը և կալանաւորուեց ճաշարանում գտնուող սպաներից։ Իր կատարած գործի դրդապատճառների մասին Ադլէրը հրաժարուեց ցուցմունք տալ։

—Շտիւրկին սպանող Ֆրիդրիխ Ադլէրը կազմակերպել էր դիմադիր սոցիալ-ռամկավար կուսակցութիւն և մարտնչում էր սոցիալ-ռամկավարների իմպերիալիստական միտումների դէմ։ Նրա հայրը, յայտնի սոցիալ-ռամկավար, պատերազմի կողմնակից էր. Ֆրիդրիխը բացէ բաց պնդում էր, թէ խաղաղութիւն պէտք է կնքել։ Աւստրիական սոցիալ-ռամկավարների ժողովում Ֆրիդրիխը արտասանեց որոտալից ճառ իւր հօր դէմ։ Նորա կինը ռուս էր. ունի որդիք։ Նա հիւանդոտ և փափուկ բնաւորութեան տէր մարդ է։ Ադլէրի, հօր և որդու բնակարաններում և «Arbeter Zeitung»-ի խմբագրատանը կատարուեցին խուզարկութիւններ։ Սպասւում են ձերբակալութիւններ։ Մի քանի ֆրանսական թերթեր յայտնում են, թէ Շտիւրկի սպանութիւնը քաղաքական լուրջ հետևանք չի կարող ունենալ։

Շտիւրկի մահուանից յետոյ, նրան հաւանական փոխարինող համարում են իշխան Հոհենլոյէ, Բարան Բէկ և Գերբեր։

—

—Պաշտօնական. Գերագոյն Հրամանատարի սպայակոյտից. Արևմտեան ճակատում նոր կարևոր ոչինչ տեղի չէ ունեցել։

—

—«Вечернее Время»-ն հաղորդում է, թէ գերմանական «№ 53» սուզանաւը յանձնեց Վաշինգտոնի գերմանացոց դեսպանին մի գրութիւն, որով առաջարկում է գործել այն ուղղութեամբ, որպէս զի Ամերիկան զինուի դաշնակիցների դէմ, սակայն Վաշինգտոնի կառավարութիւնը դրականապէս մերժում է այդ հարցի առթիւ որևէ խօսակցութիւն ունենալ։

—

Պատերազմին հմուտ հեղինակաւոր անձինք ցոյց են տալիս՝ որ այսօրուայ հաղորդագրութիւնները մատնանշում են, որ Դոբրուջայի ճակատում մեր և Ռումինական զօրքերը թողել են Տասաբլուի լճի և Չերնովոդի գիծը։ Այդ անձինք ասում են, որ ռումինացիները հերոսական ջանքերով ձգտում են կասեցնել գերմանական զօրքերի առաջխաղացումը, որի կէտ նպատակն, ըստ երևոյթին, Բուխարեստն է։ Թէև ռազմագիտութիւնը յանձնարարում է կէտ նպատակի ընտրել ոչ թէ վայրերը, այլ հակառակորդի զօրքը, սակայն պարզ է, որ Բուխարեստի ուղղութեամբ հասցրած հարուածի ժամանակ, մեր դաշնակիցներին վիճակուած կը լինի վճռել այդ քաղաքի պաշտպանութիւնը, հետևաբար այդ քաղաքի մերձակայ կամ հեռաւոր շրջակայքում տեղի ունենալիք կռիւների ժամանակ, դրական դէպքում, պէտք է կենտրոնացնել ըստ հնարաւորութեան մեծ թւով զօրք. բայց որովհետև ծանրութեան կենտրոնը գտնւում է Տրանսիլվանիայի բեմում, պէտք է ենթադրել, որ ռումինացիները Դոբրուջայի զօրքերի մի մասը օգնութեան կուղարկեն հիւսիսային խմբերին ու այդպիսով թշնամուն հնար կտան միմիայն երկրորդական բեմերի վրայ կռուելու։

# Ներքին տեսութիւն

## ՄԵՐ ԴՊՐԱՆՈՑԱՒԱՐՏՆԵՐԻ ՀԱՄԱԼՍԱՐԱՆ ՄՏՆԵԼՈՒ ԱՌԹԻՒ

Кавказское Слово-ի № 220-ում նոյն թերթի աշխատակից Բէնը, որ այնպէս ուշի ուշով հետևում է հայոց կեանքի խոշոր երևոյթներին և արտայայտւում է այնքան յաճախ—հետևեալն է ասում հայոց դպրանոցաւարտների համալսարան մտնելու խնդրի մասին։

«Վերջին ժամանակս հայոց մամուլը խնդիր յարուց հայոց դպրանոցներն աւարտող անձանց իրաւունք տալ համալսարան մտնելու *)։

«Ըստ լրագրական տեղեկութեանց այս խնդրով հետաքրքրուել է Պետական Դումայի անդամ Մ. Ի. Պապաջանեանը և մինչև իսկ այդ խնդրի մասին դիմել է ուր հարկն է։ Հայոց լրա-

*) Նախ «Համբաւաբերը» յարուց այս հարցը յուլիս ամսին. Ս. Յ. առաջնորդող յօդուածով այն միտքը արծարծեց, որ հարկաւոր է ստանալ մեր թեմականաւարտների համար համալսարան մտնելու իրաւունք։

Խմբագր.

գրերը, (գլխաւորապէս «Արշն» ու «Հորիզոնը»), խնդրի այսպիսի ձեւաւորումը համարում են բոլորովին բնականոն և ցանկանում են, որ վճռուի դրական կերպով: Տեսակէտը վերոյիշեալ լրագրերի ինքն ըստ ինքեան շատ հասարակ է. չէ կարելի փակել հայ երիտասարդութեան առջև ընդհանուր կրթութեան դռները. ինչքան շատ համալսարանականներ լինեն Հայոց մէջ, այնքան աւելի լաւ են: Բայց այդ այսպէ՞ս է: Ի՞նչ է նպատակը մեր դպրանոցների: Մեր դպրանոցները նպատակ ունեն տալու Հայոց եկեղեցուն և դպրոցներին պատրաստի մարդիկ: Իհարկէ համալսարանականները այդ բանին արգելք չեն լինում. ընդհակառակը նրանք կը տան և լաւագոյն հոգևորականութիւն և լաւագոյն մանկավարժներ: Սակայն գործնականում ստացւում է ճիշտ հակառակը: Հայոց մէջ կարելի է հաշուել մի քանի տասնեակ դպրանոցաւարտներ և կամ Էջմիածնի ճեմարանաւարտներ, որոնց յաջողուել է իբրև բացառութիւն և կանոնից դուրս ընկնել համալսարան: Եւ ի՞նչ էք կարծում, նոցանից ո՞վ է աշխատում այն ասպարէզում, որի համար նախապատրաստուել է իւր դպրանոցական պատրաստութեամբ: Մէկ, երկու, և աւելին արդէն կը սխալուեմ: Իսկ ճնշող մեծամասնութիւնը այս երիտասարդութեան ընտրեց իւր համար ասպարէզ փաստաբանութեան, բժշկութեան և պաշտօնէութեան, և համարեա թէ բոլորովին օտարացաւ իւր միջավայրից: Եւ այս երևոյթը սովորական կը դառնայ, երբ յաջողութեամբ պսակուի եղած ջանքերը հայոց դպրանոցաւարտներին համալսարաններ ընդունելու»:

«Կը բազմանայ հայ համալսարանականների թիւը, կը լցուին շարքերը փաստաբանների, բժիշկների, ինժեներների են, իսկ հայոց եկեղեցին և, որ կարևորագոյնն է, հայ դպրոցը կը մնան առանց ղեկավարների և քարշ կը տան իրենց խղճուկ գոյութիւնը: Չպէտք է հայոց եկեղեցին և հայոց դպրոցները դատել Թիֆլիսով—այստեղ շատ, նոյնիսկ չափազանց շատ հայ մտաւորականներ կան: Բայց մի գնացէք գաւառ, ուշի ուշով դիտեցէք այնտեղ դպրոցական գործը, և դուք կը տեսնէք, որ համալսարանականներն այնտեղ չեն գնում, որ դպրոցի գլուխը լաւագոյն դէպքում միջին մտաւորական հայ է, Կ'անցնի նախագիծը, որին այնպէս ազատամտաբար օժանդակում են լրագրերը, և հայ գիւղը կը մնայ առանց այդ միջին մտաւորականների խաւար ամբոխի քմահաճոյքին: Ա՞յս է միթէ արդարութեան յաղթանակը և այս կարո՞ղ է համարուել նպատակայարմար վճիռ ազգայ հայ սերընդի կրթութեան խնդրի ըստ առողջ դատողութեան: Կարծում ենք, որ ոչ. և մենք չպէտք է վախենանք այն կշտամբանքներից, թէ մեզ պակասում է «լայն հայեացք», երբ գործը վերաբերում է Հայոց դպրոցական գործի վիճակին»:

Մենք դժուարանում ենք բացարձակ ճիշտ համարել այս երևոյթը. մանաւանդ որ մեզ հակառակ երևոյթներ էլ յայտնի են: Այսպիսի երևոյթների վրայ պնդելու համար մեզ պակասում են վիճակագրական ապացոյցներ. բայց ընդունենք անգամ թէ դառն իրականութիւն է այն, ինչոր յայտնում է Բէնը և հարցնում ենք. ինչ կը ծագի այն արհեստական արգելքից, որով մենք ուզենանք առաջադիմութեան խոչընդոտ հանդիսանալ. այն՝ որ ազգային կրթութեամբ զինուած համալսարանականների թիւը կը պակսի, իսկ եկեղեցին, մանաւանդ թէ դպրոցը չի ունենայ համալսարանական պատրաստի ոյժեր, որ այնքան կարևոր են երկուսի էլ առաջադիմութեան և զարգացման համար: Միւս կողմից կարծում ենք, որ շատ դժուար է, եթէ չասենք անհնարին, արգելքներ յարուցանել այն գովելի ձգտման դէմ, որ ունին հայ դպրանոցաւարտ և ճեմարանաւարտ պատանիներն ու երիտասարդները: Իսկ եթէ հնարաւոր էլ լինէր, չպէտք էր այդ ձգտման առաջը փակել, այլ քաջալերել. որովհետև բազմադիմի են այն օգուտները, որ կարող են տալ մեր հասարակութեան ազգային միջնակարգ կրթութեամբ զինուած համալսարանականները հենց այն ասպարէզներում, որ յիշատակում է Բէնը:

Սակայն նա կարող է առարկել, որ դպրանոցաւարտները նախ պէտք է ծառայեն այն նպատակին, որի համար նախապատրաստուած են, այն է՝ հայոց եկեղեցուն և դպրոցին, որից սակայն, ինչպէս պնդում է, խուսափում են, երբ համալսարանական ուսում են ստանում:

Մենք կարծում ենք սակայն—ճիշտ համարելով հանդերձ Բէնի դիտած երևոյթը—ազգային դպրոցաւարտ-համալսարանականների եկեղեցական կոչումից և դպրոցից խուսափելու պատճառը ոչ թէ բարձր ուսումն է, այլ այն ծանր պայմանները և անկարգութիւնն ու անիշխանութիւնը, որ տիրում է մեր ազգային այդ երկու հաստատութեանց մէջ:

Ինչպէս վերաբերուեց ցարդ եկեղեցին և հասարակութիւնը դէպի այն համալսարանական եկեղեցականները, որոնք բուռն ոգևորութեամբ և բարձր ձգտումներով նետուեցան եկեղեցու գիրկը և հենց ինչպէս է վերաբերւում այժմ ևս ինքը եկեղեցին:

Մեր եկեղեցական և դպրոցական իշխանաւորները ցարդ չեն կարող ըմբռնել, որ եկեղեցական և դպրոցական ասպարէզներում իբրև վարիչներ կողմնակի և անձնական հաշիւներով չէ որ պէտք է ղեկավարուեն, որ եկեղեցին և դպրոցը ոչ թէ միջոց են անձնական հաշիւների ու ձգտումների, այլ նպատակ, որոնց հաշիւներով էլ ուրեմն պէտք է ղեկավարուեն և ծառայեն:

Իսկ մեր դպրոցներից որքա՞ն գաղափարական երիտասարդներ ոչ միայն դպրանոցաւարտ և ճեմարանաւարտ, այլև պետական միջնակարգ դպրոցաւարտ համալսարանականներ դուրս են շպրտուած, որոնք վերջի վերջոյ ստիպուած են եղել ընտրել ճիշտ այն ասպարէզները, որ ակնարկեց Բէնը:

Չնայելով այս անհեթեթ իրողութեան, մեր գաւառի միջնակարգ դպրոցների ու դպրանոցների ուսուցիչների կէսից աւելին ազգային դպրանոցաւարտ և ճեմարանաւարտ համալսարանականներ են: Իսկ մեր դպրոցական վարչութիւնը, եթէ ընդունենք գոյութիւնը, ի՞նչ է արել այդ գաւառ վազող գաղափարական համալսարանականների վիճակը բարուոքելու կամ գէթ ուսուցչական դրութիւնը կամայականութեանց չենթարկելու համար: Տասերից մի օրինակ:

Ս. Էջմիածնի Ճեմարանը իւր քառասնամեայ ընթացքում տակաւին չկարողացաւ իւր համար յարատև ուսուցչական մի խումբ կազմել և դեռ երկու տարի առաջ համարեա իւր ամբողջ խումբը առանց որևէ քննութեան արձակեց: Ճեմարանը տակաւին չունի թոշակարգ իւր ուսուցիչների համար. այն ժամանակ երբ վանքի «թուանքչիները» թոշակ են ստանում:

Սկայ

---

## Հ. Կ. ԿՈՄԻՏԷԻ ՆԻՍՏԸ

Հոկտ. 9-ին Կ. Հ. Բ. Ընկերութեան դահլիճում տեղի ունեցաւ Հ. Կ. Կոմիտէի նիստը նախագահութեամբ Ս. Յարութիւնեանցի:

Նիստին հրաւիրուած էին հասարակական աչքի ընկնող բազմաթիւ գործիչներ և ներկայացուցիչներ ազգային հաստատութեանց կողմից:

Նախ և առաջ մի մանրամասն զեկուցում տուեց Վանի շրջանի դրութեան մասին սկզբից մինչև վերջին օրերը մի նորեկ: Նա մանրամասն տեղեկութիւններ հաղորդեց Վան քաղաքի աւերակ դրութեան, ժողովրդի անմխիթար և անօգնական վիճակի, վերջին գաղթի և այլն գործերի վերաբերեալ:

Յետոյ Պետական Դումայի անդամ Միք. Պապաջանեանը զեկուց գաղթականական գործի մասին: Երևաց որ ամբողջ Ռուսաստանում այժմ գոյութիւն ունի 3,000,000 գաղթական, որից մօտ 1,000,000-ը լեհ գաղթականներ են, իսկ 274,500 հայ, որ ապաստանել են Կովկասում: Ընդհանուր գաղթականների կարեք-

ների համար բաց է թողնուած 360 միլիոն ռուբլի, որից՝ համեմատաբար շատ քիչ մասն յատկացուած է Կովկասում բնակուող փախստականներին։

Փախստական երեխաների և որբերի կրթութեան հոգսը իր վրայ է վերցրել Տատեանայի Կոմիտէն։ 9000 հայ երեխաների կրթութեան ծախսն արդէն հոգացուել է։ Բայց որովհետև գաղթական երեխաների թիւը աւելի է քան ինչոր ներկայացուած է, հարկաւոր է բոլոր վայրերի գաղթական երեխաների ճշգրիտ թիւը կազմել և ներկայացնել, որպէսզի բոլոր երեխաներն էլ հնարաւորութիւն ունենան ուսում ստանալու։

Այնուհետև պ. Պապաջանեանը մանրամասն նկարագրեց իրերի ներկայ կացութիւնը, պատերազմական հանգամանքները և առաջարկեց հայ կազմակերպութիւններին, որ աշխատեն աւելի ժողովուրդը պահել Կովկասում մինչև պատերազմի վերջանալը և բոլորովին ապահովութեան դէպքում միայն ուղարկեն երկիր։

Դր. Ջոհրաբը Թիւրքահայ գրականութեան մէջ վիպասանութեան ճիւղը հասցրեց իր կատարելութեան և բարձրութեան։ Բայց դժբախտաբար ներկայ արհաւիրքը չը խնայեց նաև այդ մեծ մարդուն և նա էլ միւս արուեստագէտների հետ զոհ գնաց Թիւրքական գազանութեան։

Ի վերջոյ պ. Մատէնճեան հրաւիրեց հասարակութեան գընահատել Ջոհրաբը որպէս արուեստագէտի և յարգել՝ որպէս նահատակ։

Դահլիճը ծայրէծայր լեցուած էր հետաքրքիր հասարակութեամբ. որոշ տեղեր յատկացուած էին նաև արևմտահայ մտաւորականութեան։

Կովկասի Հայ Գրողների Ընկերութեան սկսած դասախօսութիւնները արժանի են գնահատութեան և քաջալերանքի։

Հայորդի

## ՀԱՅ ԳՐՈՂՆԵՐԻ ԸՆԿԵՐՈՒԹԵԱՆ ԵՐԵԿՈՅԹԸ

Հոկտ. 8-ին Կովկասի Հայ Գրողների Ընկերութիւնը Երաժշտական սալոնում տուեց իւր առաջին երեկոյթը՝ նուիրուած արևմտահայ գրականութեան։

Հայ Գրողների Ընկերութեան նախագահը բանալով երեկոյթը աւուր պատշաճի մի քանի խօսք ասաց, վեր հանելով այն տառապանքն ու խաչելութիւնը, որ այս րոպէիս քաշում են մեր արևմտահայ եղբայրները թիւրքական գազանութեան ներքև, որին զոհ են գնացել նաև արևմտահայերի վաստակաւոր գրողներ՝ Ջոհրաբ, Զարդարեան, Վարուժան և Սիամանթօ։ Յարգելի բանաստեղծը հրաւիրեց հասարակութեան՝ ջերմեռանդօրէն ձօնել արևմտահայերի ողջակիզուող մտքին, որը ունեցել է ծաղկման ու բարգաւաճման զօրաւոր շրջաններ։

Ապա թիւրքահայ գրագիտուհի տիկ. Զապէլ Եսայեան կարդաց առաջին դասախօսութիւնը։ Դասախօսուհին համառօտ ակնարկ ձգեց 80—90-ական թուականներին բողբոջող արևմտահայ նոր գրականութեան և նրա ներկայացուցիչների վրայ. շեշտեց այն արիւնոտ և սարսափելի քաղաքական մթնոլորտը, որի մէջ ապրել է արևմտահայ ժողովուրդը, որ չնայած իր քաշած ֆիզիքական տանջանքներին և բարոյական ծանր զրկանքներին, կարողացել է ստեղծել մի գրականութիւն, որ պատիւ է բերում նրան։ Այդ գրականութիւնը եղել է հզօր արտայայտիչ ցեղի տառապանքներին ու ապրած կեանքին. նա գերագոյն արտայայտութիւնն է հոգեկան այն ապրումներին, որով գերազանցապէս ներշնչուած են եղել արևմտահայ տաղանդաւոր արուեստագէտներ։ Նրանցից մէկը՝ Սիամանթօն եղել է հզօր երգիչը ցեղի տուայտանքներին ու սուգերին, Գրիգոր Ջոհրաբը՝ իրապաշտ արուեստագէտը ներկայացրել է Պոլսահայ հասարակական և ընտանեկան կեանքը։ Ռ. Զարդարեան՝ գաւառական կեանքի և լեզուի հզօր նկարիչը և վերջապէս Վարուժան՝ քնքոյշ և խորունկ բանաստեղծը, որ մարդկային յոյզերն ու զգացումները շնչաւորել է գեղեցիկ արուեստով։

Տիկ. Եսայեանից յետոյ խօսեց պ. Մատէնճեանը՝ մասնաւորապէս նիւթն ունենալով Գր. Ջոհրաբը։

Դասախօսը նրբօրէն և վարպետօրէն բնորոշեց Ջոհրաբի նկարագիրը, որպէս վիպասան, որի մէջ զուգընթացաբար աճել և զարգացել են վիպական երկու ուղղութիւններ. իրապաշտութիւն (ռէալիզմ) և ռոմանտիկ ուղղութիւնը. իւր 30 գրուածքների և նորավէպերի մէջ հեղինակը երևան է բերում մարդ-անհատը իր հոգեբանութեան բազմաթիւ կողմերով, իր ապրումներով և իրական կենցաղավարութեամբ։ Նրա ոճը պատկերաւոր է, սահուն և նազելի, նրա պատկերները շքեղ են, հեւասպառ և կարճ։

## ԳԱՂԹ. ԴՊՐՈՑՆԵՐԻ ՎԵՐԱԲԱՑՄԱՆ ԱՌԹԻՒ ԳՈՒՄԱՐՈՒԱԾ ԽԱՌՆ ԺՈՂՈՎԸ

Հոկտ. 9-ին Կ. Հ. Բ. Ընկերութեան դահլիճում տեղի ունեցաւ գաղթ. դպրոցների վերաբացման մասին՝ հայկական բոլոր կազմակերպութիւնների ներկայացուցիչներից գումարուած խառն ժողով նախագահութեամբ պ. Ս. Յարութիւնեանի։

Կարդացուեց դպրոցական Խորհուրդի կազմած ուսումնական ծրագիրը։ Այդ ծրագրի համաձայն գաղթականական դպրոցները պիտի ունենան քառամեայ դասընթացք, առաջնորդ ունենալով ռուսահայ ծխական դպրոցների առաջին չորս տարուայ ծրագրի դասատախտակը, մի քանի փոփոխութիւններից յետոյ։

Որոշուեց վայելչագրութեան առարկայի համար յատուկ ժամեր չսահմանել, այլ այդ առարկան անցնել լեզուի հետ։ Պատմութիւնն և աշխարհագրութիւնը դուրս ձգուելով, նրանց փոխարէն հայրենագիտութիւն մտցուեց, որի հետ միասին ուսուցիչը պէտք է աւանդէ հարկաւոր և նախնական տեղեկութիւններ այդ երկու առարկաներից։ Որոշուեց նաև Գ. և Դ. տարիների ընթերցանութեան համար կազմել փոքրիկ գրադարաններ։

Դասատախտակի վերջնական ձևը հետևեալն է.

Կրօն՝ չորս բաժանմունքներում երկուական դաս։ Հայերէն Ա. բաժանմունքում 7, իսկ միւսներում 6-ական դաս, Ռուսերէն Բ. Գ. և Դ. տարիներում 6-ական դաս։ Թուաբանութիւն Ա.-ում՝ 5, իսկ միւսներում՝ 4-ական։ Հայրենագիտութիւն՝ Գ. և Դ. բաժանմունքներում 3-ական դաս։ Բնական գիտութիւն՝ Գ.-ում 2, Դ.-ում 3։ Նկարչութիւն Ա. Բ. և Գ. բաժանմունքներում 2-ական, իսկ Դ.-ում 1։ Երգեցողութիւն 2-ական դաս։ Ձեռագործ Բ. Գ. և Դ. բաժանմունքներում 2-ական դաս։ Ընթերցանութիւն՝ Գ. և Դ.-ում՝ 1-ական դաս։

Ուսուցիչների ամառուայ ամսականները կարող են տրուել միայն այն ժամանակ, երբ կառավարութիւնը վճարի և ուսուցիչներն էլ պաշտօնավարեն։ Հակառակ դէպքում կազմակերպութիւնները պատասխանատու չեն։

Դպրոցական բոլոր ծախքերի նախահաշիւը կազմուեցաւ ի նկատի ունենալով Տատեանայի Կոմիտէից ամեն 40 աշակերտի համար տարեկան ստացուելիք 1200 ռ. գումարը։ Այդ նախահաշուի համաձայն՝ բնակարանի, ծառայի, լուսաւորութեան և վառելիքի, Շրջանային տեսչի ծախքը՝ 100-ական ռուբլի, դասագրքերին՝ 200 ռ., իսկ ուսուցչի ռոճիկը 600 ռ. է լինելու։

Այս նախահաշիւը կարող է փոփոխուել ըստ տեղի և յարմարութեան։

Այս հաշուից դուրս եղած ծախքերը հոգալու են միւս կազմակերպութիւնները։

## ԳԱՂԹ. ՆՈՐ ԴՊՐՈՑՆԵՐ

Ինչպէս յայտնի է, գաղթական երեխաների ցուցակագրութիւնը ցոյց է տուել, որ նրանց թիւը աւելի շատ է քան կարծւում էր և որ շատերը նրանցից զուրկ են մնացել կրթութիւնից։

Այդ առթիւ Հ. կ. Կոմիտէն իր մի մասնաւոր նիստում որոշեց նոր դպրոցներ բանալ այն վայրերում, ուր մեծ թւով գաղթական երեխաներ կան։

Հրահանգուեցաւ ճիւղերին, որ նոր դպրոցներ բանան հետեւեալ վայրերում՝ Գանձակի նահանգում—15, Ղազախի գաւառում՝ 14, Նոր-Բայազէդի՝ 26, Ալէքսանդրապոլի՝ 20, Կաղզւանի շրջանում՝ 3, Իգդիրի՝ 5։

Հայկ. կենտր. Կոմիտէի Վանայ լիազօրը հեռագրել էր, որ Վանում մեծ թւով դպրոցական տարիք ունեցող երեխաներ կան։

Կոմիտէն որոշեց Վանում ևս բանալ 3 դպրոց։

---

## ԳԱՂԹԱԿԱՆԱԿԱՆ ԳՈՐԾԵՐ

Սկսուել է նոր փախստականների հոսանքը դէպի Կարին։ Ռուսական բանակների կողմից նուաճուած վայրերից մեծ թւով հայեր են ապաւինում, որոնց դրութիւնը, ինչպէս հաղորդում են «Հորիզոն»ի թղթակիցները, շատ աննախանձելի է։ Նրանք մեծ մասամբ մերկ են, սև հացի և բժշկական օգնութեան կարօտ։

Սեպտեմբերի 26-ին Կարին են հասել 140 նոր գաղթական, որոնք մեծ մասամբ Երզնկայի գիւղերից են։

Սեպտ. 29-ին նոյն քաղաքն են հասել մօտ 300 հոգի, որոնք Երզնկայի, Խարբերդի և Չարսանճագի բնակիչներից են։

Հոկտ. 1-ին նմանապէս Կարին են հասել մօտ 50 գաղթական։ Բոլոր այդ գաղթականները մնացորդներն են այն օտարահասուած ժողովուրդին, որ պատերազմից առաջ բնակւում էր Խարբերդի, Ակնի, Սուազի և այլն շրջանների մէջ։ Այդ մեծազանգուած ժողովուրդից շատերը կոտորածի ենթարկուել են, շատերը քշուել են Միջագետքի տապ անապատները, իսկ մի մասը, որոնք պահուած են եղել տեղական քիւրդերի մօտ և կամ լեռներում և ծերպերում ապաստան գտել, այսօր մազապուրծ վիճակի մէջ գալիս են և անհրաժեշտ է որ մեր մարմինները իրենց շուտափոյթ օգնութեամբ պահպանեն նրանց մահուան ճիրաններից։

Խարբերդից Սեպուհը Անդրանիկին ուղղած իր նամակում շատ սոսկալի գոյներով է նկարագրում տեղական հայերի դրութիւնը, որոնք հազիւ ճողոպրած թիւրքական բարբարոսութիւնից՝ մի կերպ քարշ են տալիս իրենց գոյութիւնը։

Այն սարսափները, որոնք անցել են այդ խեղճերի գլխներից՝ միշտ կերպանում է նրանց երեւակայութեան առջև և տանջում ու բորբոքում նրանց գիտակցութիւնը...։ Այդպիսի հոգեբանութեամբ ապրող ժողովուրդը բնական է, որ կարիք ունի ոչ միայն նիւթական միջոցների իր կեանքն ապահովելու համար, այլ և կարիք ունի բարոյական մեծ օժանդակութեան, հոգեկան անդորրութեան, որպէսզի նա վերադառնէ իր նախկին բնականոն ու խաղաղ վիճակը։

Երկրի միւս վայրերից ամենից աւելի Վասպուրականի շրջանն է, ուր այժմ դիմում է ժողովուրդը, թէև ոչ առաջուայ զանգուածային հոսանքով։ Ապահովութիւն չկայ բառի տարրական իմաստով և այդ բանի պատճառով էլ վերադարձող ժողովուրդը չի կարող կայուն վիճակ ունենալ և ենթակայ է անդադար տատանումների։ Վանից հաղորդում են, որ թիւրքական սահմաններից հինգ քիւրդ (2 կին, 3 տղամարդ և 1 պատանի) վերջերս դաղտնի հեռացել են և եկել Հայոց Ձորում բնակւող շատախցի հայերի բ ա ղ դ ն են ընկել և ապաստարան խնդրել. Նրանք նկարագրել են իրենց սարսափելի դրութիւնը թիւրքական տիրապետութեան տակ, ուր օրերով անօթի ու քաղցած անցնում են իրենց օրերը։ Նրանք հայերին ասել են՝ «կամ մեզ սպանեցէք կամ փրկեցէք սովից...» հայ գիւղացիները սիրով ընդունել են նրանց և կերակրում են իրենց աղքատիկ սեղաններից։

Այդ քիւրդերը լալով նկարագրում են այն վայրենութիւնն ու գազանութիւնը, որ գործադրել են հայերի վերաբերմամբ և խոստովանում են տնտեսական ու քաղաքակրթական այն կարեւոր դերը, որ հայ ժողովուրդը կատարում էր Օսմանեան երկրում։ Այժմ, երբ այդ երկիրը ամայացել է այդ եռանդուն ու շինարար տարրից, ամեն ինչ տակն ու վրայ է եղել, վաճառականութիւնն ու առեւտուրը դադարել է և երկրի հաղորդակցութեան ու պարենաւորման միջոցները չքացել են։

Այդպէս ուրեմն մեր վաղեմի, մեր միս ու արիւն ծծող թշնամին, ինչ ասել կուզի, որ քիչ-քիչ զգում է այն դժոխային ու կործանարար արարքը, որ ինք կատարեց։ Քիչ քիչ, բայց դառնութեամբ զգում է իւր կործանման մօտալուտ վայրկեանը...։

Կործանումը ոչ միայն քաղաքական ասպարէզում, այլ և տնտեսական ու կուլտուրական ասպարէզների վրայ...։ Այն ախտաւոր ու վաղուց ի վեր քայքայուած շէնքը, որ Թ ի ւ ր ք կ ա ռ ա վ ա ր ո ւ թ ի ւ ն էր կոչւում և որի պահպանման ամենազօրաւոր ազդակներէն մին հայ ժողովուրդն էր կազմում ապահովաբար, այժմ արդէն սկսել է փլատակուել, ճարճատիլ։

Եւ երբ օսմանեան երկրի դահիճները նայում են շէնքի պատուհաններից և տեսնում նրա հիմքերի ճարճատումը, արտասուքն աչքերին յիշում են իրենց հին օրերը, իրենց հին բարեկամների անկեղծ խորհուրդները. յիշում են ու տանջւում այն գիտակցութեամբ, որ այդ անկեղծ բարեկամներին նահատակել են իրենք մոլեգնութեան և ցնորքների մի սարսափելի վայրկեանին...։

Կը գայ մի օր, երբ հայութեան այդ դահիճները աւելի դառն և աւելի սոսկալի կերպով պիտի զգան իրենց սխալը և այդ ամենից ահարկու ապտակը կարող է լինել օսմ. կառավարութեան այսօրուայ վարիչների երեսին խփուած...։

---

## ԿԱՐՆՈՒՄ

«Русское Слово»-ի թիւ 228-ում թերթի աշխատակից Ֆ. Սիբիրսկին մի թղթակցութիւն է զետեղել, որ մենք կարեւոր ենք համարում ամբողջապէս թարգմանել.

«Եօթ ամիս է ես Կարնում չեմ եղել։ Այն ժամանակ նորանուաճ այս քաղաքը սոսկալի կեղտոտուած ու կողոպտուած էր նահանջող թուրք զօրքերի ձեռքով։ Փողոցներով շարժւում էին սայլեր, անցնում էին զօրասիւներ, զրնգում էր հրետանին։ Խումբխումբ անցնում էին քաղաքը մաքրելու համար հաւաքուած թիւրքերը։ Մի խօսքով այդ մի նորանուաճ բերդ էր։ Խաղաղ բնակիչները չէին տեսնւում, իսկ եթէ երբեմն էլ երեւում էին փողոցներում, աշխատում էին շուտով ծլկուել տուն և թագնուել այնտեղ, հիւսիսից եկողների աչքից։

«Այժմ Կարինը մաքրուել է, փլատակները մասամբ հեռացուել են, մասամբ էլ հաւաքուել են՝ աւելի կամ պակաս կարգին աղիւսի կոյտեր կազմելով։ Միշտ կարելի է տեսնել թիւրքեր և թրքուհիներ. վերջինները ծածկուած են լինում խորհրդաւոր, սրճագոյն սաւաններով։

«Շուկան եռում է արեւելեան քաղաքներին յատուկ կեանքով՝ Փոքրիկ խանութներում մտածկոտ թիւրքերը վաճառում են մաշուած գորգեր, արեւելեան կտորներ, մնացորդներ աւստրիական գործուածքների, և թաշկինակներ, փոքր ինչ նպարեղէն ապրանքներ, որոնց կողքին մի քանի սրճաթասեր, կոտրտուած կանթերով

և ջարդուած պնակներով, տէր-ողորմեաներ, ճխամորճեր, կըլկլաներ (ղայլաններ) և այլն։

Այլ խանութներում ծախւում են արևելեան ինչ-որ կանաչեղէն, վարունգ, ձմերուկ և միս։ Գները սոսկալի են։ Թիֆլիսում թէ գորգերը, թէ ճօթեղէնը և թէ չնչին ապրանքները կարծում եմ, հաւանօրէն, երկու-երեք անգամ աժան լինին։ Սակայն ինչ կանես, երբ եկուոր ռուսը ուզում է ոևէ բան իբրև յիշատակ գնել և յօժարութեամբ, առանց սակարգելու վճարում է։

Թիւրքերը օգտւում են, ինչպէս կօգտուէր նրանց տեղ ապրանք բերող վրացին ու ռուսը։ Հայ խանութներ գրեթէ չը կան, որովհետև հայերը մի քանի պատճառներով չեն կարողացել խանութ բանալ և Կարինը, որ մինչև պատերազմը թիւրքահայկական քաղաք էր և նոյնիսկ, գուցէ, աւելի հայկական, այժմ դարձել է զուտ թիւրքական։ Հայերը կամ մորթուած են կամ փախել են։ Վերադառնալ աջողուել է շատ քչերին, և քաղաքը դարձել է թիւրքական։ Թիւրքերը իրանց շատ լաւ են զգում։ Բաւական է լինել Կարնում և անցնել ղզլբաշների թագաւորութեան միջով, որպէսզի համոզուի մարդ, թէ որքան մտացածին է այն զրպարտութիւնը, որ երևում է յաճախ չէզոք մամուլի գերմանասիրական օրգաններում, իբր թէ Ռուսաստանը ճնշում է Թիւրքիայից նուաճած վայրերի մահմեդական բնակիչներին։

«Այն մուսուլմանները, որ մնում են իրանց տեղերում և զէնք չեն բարձրացնում ռուսների դէմ, մեր իշխանութեան տակ ապրում են ինչպէս իրանց տանը։ Էրզրումում, օրինակ, ամեն ինչ արուած է, որ թիւրքերը լաւ ապրեն։ Կազմուած է թիւրքական յատուկ ոստիկանութիւն, և մինչև անգամ նրանց նշանազգեստների և կոճակների վրայ գրուած է ոչ թէ ռուսերէն, այլ արաբերէն։ Մինչև անգամ այն մուսուլմաններին, որոնք մի քանի անգամ են զէնք բարձրացրել ռուսների դէմ,—ինչպէս օրինակ Մուշի շրջանի քիւրդ ցեղեր՝ ռուս իշխանութիւնը մի քանի անգամ ներել է և թողել իրանց տեղերում։ Այս հանգամանքի շնորհիւ մուսուլմանների դրութիւնը Հայաստանում աւելի լաւ է, քան թէ հայերինը։ Մենք աւելի կուլտուրական դուրս եկանք, քան թէ թիւրքերը և նրանց դաշնակից գերմանացիները. մենք չենք կոտորում մուսուլմաններին, ինչպէս նրանք անում էին հայերին,—ընդհակառակը, մուսուլմանները մեզ մօտ վայելում են օրէնքի նոյնպիսի հովանաւորութիւն, ինչպէս երկրի միւս բընակիչները։ Իսկ հայերը կամ կոտորուած են կամ փախել են և չեն կարող վերադառնալ. և երկիրը, ուր քրիստոնեաները նախ քան պատերազմը կազմում էին գերակշիռ ժողովուրդը, դառնում է միւսիւլմանական»։

## ԳԱՂԹԱԿԱՆՆԵՐԻ ՎԻՃԱԿԸ ՀԱՄԱՄԼՈՒԻ ՇՐՋԱՆՈՒՄ

1915 թ. յուլիսեան պատմական նահանջից յետոյ մեծ թւով Բուլանըխցի գաղթականներ տեղաւորուեցին Համամլուի և շրջակայքը գտնուած Վորդնաւ, Ղաչաղան, Ջօթուռ, Սպիտակ և Ջիգդամալ զուտ հայաբնակ գիւղերում։

Եղած մասնաւոր յանձնարարութեան համաձայն՝ հոկտ. ամսի 1-ին մեկնեցի յիշեալ գիւղերը՝ մօտիկից ծանօթանալու հայ գաղթականների արդի վիճակին։

Երկու օրուայ կարճ ճամբորդութիւնից յետոյ՝ բաժանուեցի հայրենազուրկ հայրենակիցներից հետևեալ տպաւորութիւններով։ Համամլուի շրջանում գաղթականների թիւը հետևեալն է.

Համամլու 370 անձ, Վորդնաւ 180, Ղաչաղան 91, Ջօթուռ 98, Սպիտակ 53, Ջիգդամալ 62, ընդամենը 858 անձ։

Մօտ մէկ և կէս տարի վերոյիշեալ գաղթականները նպաստ են ստանում «Եղբ. Օգ.» Կոմիտէտից ամսական 6 ռ. չափահասները, և 3 ռ. անչափահասները, այսինքն 7—8 տարեկան եղողների համար։ Առաջ, երբ տակաւին Մեծ-Ղարաքիլիսայում բացուած չէր «Պարենաւորման խանութ», գաղթականների ստացած 6 ռ. նպաստադրամի կէսի փոխարէն տրւում էր ալիւր. իսկ այժմ, շնորհիւ Հ. Կ. Կոմիտէի ձեռք առած ջանքերին, ինչպէս ամեն տեղ, Մեծ-Ղարաքիլիսայում եւս բացուած է թաղթականների համար «Պարենաւորման խանութ», որից օգտւում են շրջանիս գաղթականները՝ ստացած նպաստի փողերովը գնելով իրենց անհրաժեշտ կենսամթերքները մատչելի գներով։ Այսպէս՝ ալիւրի պութը 2 ռ. 67 կ., շաքարինը $32\frac{1}{2}$ կ., իսկ սապոնինը 33 կ.։ Իսկապէս մի մեծ բարիք է, որ Հ. Կ. Կոմիտէն ցոյց է տալիս գաղթականներին, այն պարզ պատճառով, որ երբ հրապարակի վրայ կենսամթերքների գները չտեսնուած բարձրութեան են հասել, գաղթականների համար բացուած խանութում պատրաստ է ամեն տեսակ անհրաժեշտ կենսամթերքը և հարկ եղած պահին կարող են ձեռք բերուել։

Շրջանիս բոլոր գաղթականներն առանց բացառութեան արտաքինից շատ տխուր և ողորմելի մի երևոյթ ունեն,—մերկ են, բոռխ իսկական իմաստով։ Տարի ու կիսուայ մէջ մէկ թէ երկու անգամ հագուստ են ստացած, բայց շատ քիչ է և անբաւարար։ Եթէ անհրաժեշտ չափով հագուստ և գիշերուայ սթար (անկողին), ինչպէս նաև ոտնամաններ չուղարկուին, յառաջիկայ ցուրտ և սառնամանիքի օրերին՝ կարող է պատահել, որ սուր հիւանդութիւններ առաջ գան։

Կազմածս վիճակագրութեան համաձայն վերոյիշեալ վեց գիւղերում ներկայիս գտնւում են 100-ից աւելի ուսման տարիք ունեցող երեխաներ, որոնցից միայն 60-ից աւելի Համամլուի մէջ են։ Հայկ. Կ. Կոմիտէն անցեալ 1915 թ. դեկտեմբերից սկսեալ յիշեալ գիւղում բացած է մի դպրոց, ուր սովորում են 63 երկսեռ աշակերտ մի ուսուցչով։ Մնացած գիւղերի երեխաներն չկարողանալով օգտուել սոյն դպրոցից տեղերի հեռաւորութեան պատճառաւ, ի զուր թափառում են փողոցների մէջ, փճացնելով իրենց մանկութեան ոսկի օրերն ու ժամերը։ Ցանկալի կը լինէր, որ Հ. Կ. Կոմիտէն ուսման հնարաւորութիւնից զրկուած յիշեալ երեխաների համար մի դպրոց բանար Վորդնաւ գիւղի մէջ, որից կարող էին օգտուել և Սպիտակ, Ջօթուռ և Ղաչաղան գիւղերում եղած գաղթ. երեխաները։ Մատնանշուած գիւղում ունենալ մի այդպիսի դպրոց՝ շատ յարմար է միւս գիւղերին շատ մօտիկ լինելուն համար։

Կ. Կոմիտէի մասնաւոր ուշադրութիւնն եմ հրաւիրում սոյն կարևոր և ամենաանհրաժեշտ խնդրի վրայ։

Գաղթական

Համամլու
6 հոկտ.

## ՄԱՀԱՑՈՒՑԱԿ

### † ՀԱՅՐ ԳԱՐԵԳԻՆ ՂՈՒԿԱՍԵԱՆ

Երկարատև ու ծանր հիւանդութիւնից յետոյ հոկտ. 7-ին Բագւում վախճանուեց երկարամեայ հայ վաստակաւոր գործիչ Գարեգին քահ. Ղուկասեանը։

Հանգուցեալը ծնուել է Շամախու գաւառի Քեօհլիւջ գիւղում 1848 թուին։ Նախնական կրթութիւնն ստացել է իր ծննդավայր գիւղում, ապա մտել է Շամախու գաւառական դպրոցը, որի դասընթացը յաջողութեամբ աւարտելով՝ նուիրուել է ուսուցչական գործունէութեան։ 1870 թ. ստանձնում է Շամախու ծխական դպրոցի տեսչութիւնը։ Երկու տարի յետոյ նա տեղափոխւում է Ալէքսանդրապոլ, որտեղ տասներկու տարի ուսուցչական պաշտօն է վարում ս. Փրկչի տղայոց և Արղութեան օրիորդաց միջ-

նակարգ դպրոցներում։ 1884 թ. տեղափոխւում է Թիֆլիսի այն ժամանակուայ նշանաւոր Գայիանեան օրիորդաց միջնակարգ դպրոցը։ 1885 թ. հրաւիրւում է Էջմիածնի Գէորգեան Ճեմարանը ուսուցչութեան։ 1886 թ. տեղափոխւում է Բագուի հայոց դըպրոցները և այլն։

Միջնակարգ դպրոցների կրօնի և հայոց լեզուի դասատուի պաշտօնը նա պատւով և իրան յատուկ արժանաւորութեամբ վարում է մինչև մահը։

Մօտ կէս դար հանգուցեալը հայ մանուկ սերնդի դաստիարակութեան գործին է նուիրւում և ամեն տեղ, ուր նա եղել է ուսուցիչ, լաւ դաստիարակի համբաւ է վայելել։

Ուսուցչութեան հետ միասին նա զբաղւում է նաև գրականութեամբ։ Աշխատակցում է «Մեղու Հայաստանի» և «Արձագանք» օրաթերթերին և «Փորձ» ամսագրին։

Թարգմանում է Դիստէրվէգի «Հիմնական տրամաբանութեան կանոնները», Մասէի «Մի կտոր հացի պատմութիւնը»։ Կազմում է գրաբառ լեզուի քերականութիւն, «Ընթերցարան» մանուկների համար, աշխարհաբառի է թարգմանում Եղիշէն, ընդհանուր պատմութեան դասագիրք է կազմում մեր դպրոցների համար և լոյս է ընծայում «Հայ բողոքականութեան պատմութիւնն Անդրկովկասում» գիրքը։

1899 թ. Բագուի հայ համայնքի առաջարկութեամբ քահանայ է ձեռնադրւում։ Ցեառոյ դպրոցների հոգաբարձութեան անդամ է ընտրւում և տանում այդ պաշտօնը մինչև մահը։

Հայր Ղուկասեան իր այդ երկարամեայ գործունէութեան ընթացքում աշխատել է միայն օգտակար հանդիսանալ հայ ժողովրդին, բաւարարութիւն տալով նրա բարոյական ու մտաւոր կարիքներին ըստ իւր կարողութեան։ Իբրև ազգային հասարակական գործիչ, ուսուցիչ, գրագէտ և քահանայ նա եղել է շիտակ և մաքուր, բարեբարոյ, քաղցրահամբոյր, համեստ և օրինակելի. ուստի և յարգուած ու պատուած շրջապատից, բարեկամներից, ծանօթներից, աշակերտներից, պաշտօնակիցներից և մեծաւորներից։

Հանգիստ աճիւնիդ, անխոնջ գործիչ։

---

## ԳԱՒԱՌ

ԼԱՅԼԱՇԻ (Քութայիսի նահանգ), 30 սեպտեմբերի։

Քանիցս գրուել է հայոց թերթերում, որ Վրաստանի և Իմէրէթի կողմերը ծխական դպրոցներ են բացւելու, և ճիշտ որ ամեն տեղ բացուեցին, բայց Լայլաշը չարժանացաւ այդ տաճարին։ Լայլաշի ծխականները շատ չքաւոր են և անկարող այս սուրբ գործի հիմքը դնելու։ Իսկ այս պատերազմը հօ բոլորովին աղքատացրեց նրանց։ Կրկին դիմում ենք հայոց բարձր հոգևոր իշխանութեանը՝ Թեմիս առաջնորդի միջոցով, որ հոգան այս գործի մասին և ծխական դպրոց բանան։

Տեղիս Ս. Աստուածածնի տաճարի պատը երկրաշարժից կէս է եղած և մենք մեր միջոցներով չենք կարող նորոգել։ Գոնէ այս վերջին սբ. տաճարը նորոգող լինէր։

Երկու տարի առաջ Լայլաշում հրդեհ ծագեց և հայոց թաղը ամբողջովին այրուեց։ Ոչ մի կողմից օգնութիւն չհասցրին՝ բացի տեղացի վրացիներից, որոնք փող ժողովեցին և վնասուածներին բաժանեցին։

Լայլաշ գիւղն ունի մօտ 40—50 ծուխ, որոնցից և ոչ մէկը հայերէն չգիտէ։ Քահանան էլ երկար տարիներ մնալով այնտեղ համարեա թէ հայերէնը մոռացել է, Ս. Աւետարանը վրացերէն է թարգմանում։ Նա ծերացել է և ուզում է պաշտօնը թողնել, բայց ո՞վ կարող է յանձնել այդ գործը և ո՞վ կարող է Լայլաշում քահանայութիւն անել։

Եւ որպէսզի Լայլաշի հայութիւնը չկորչի, անհրաժեշտ է բանալ ծխական դպրոց։

Անցորդ

---

## ՏԱՐԵԳԻՐ ԲԱՐԵԳՈՐԾՈՒԹԵԱՆ

Կովկասի Հայ Բարեգ. Ընկերութեան Խորհրդին

Ի նկատի ունենալով, որ վրացախօս վայրերում մայրենի լեզուն հետզհետէ մոռացութեան է տրւում և այդտեղի հայերը՝ բացի կուլտուրապէս յետադիմելուց, խորթանում են նաև հայութիւնից, միւս կողմից ցանկանալով իմովսանն ձգել իմ լուման ազգային կուլտուրական յառաջադիմութեան մէջ, խոստանում եմ պարբերաբար վճարել Կ. Հ. Բ. Ընկերութեան Խորհրդին տարեկան հինգ հարիւր ռուբլի, այն պայմանով, որ Խորհուրդն իմ անուան մի դպրոց պահի վրացախօս վայրերից մէկում։ Տեղի ու դպրոցի ձևի ընտրութիւնը վերապահելով յարգելի Խորհրդից, խնդրելով միմիայն տարեկան գէթ մի անգամ իրազեկ պահել ինձ իմ անուան պահուող դպրոցի տնտեսական ու կրթական գործի մասին։

Թովմաս Խան-Գիւլեանց

6 հոկտեմբ. 1916
Թիֆլիս

Կ. Հ. Բ. Ը-թեան Խորհուրդը շնորհակալութիւն յայտնելով բարերարին՝ յանձն է առել կատարել նրա ցանկութիւնը, որոշելով միանգամայն դպրոցի վրայ լինելիք ծախքի աւելին Ընկերութեան հաշուից անել։

* * *

Կ. Հ. Բ. Ը-թիւնը շնորհակալութեամբ ստացել է Եկատերինէ Ալէքսանդրեան Թալանթարեանից 75 ռ. ճաշավարձ երեք չըքաւոր աշակերտների համար՝ իւրաքանչիւրին ամսական 6 ռ. վըճարով մինչև 7 փետրուարի առաջիկայ տարի, խոստանալով շարունակել նոյնը մինչև ուսումն. տարուայ վերջը։

* * *

Կ. Հ. Բ. Ը-թեան Խորհուրդը, աչքի առաջ ունենալով, որ մեր ծխ. դպրոցների մեծ թւով չքաւոր աշակերտներ հնար չունեն ամսական 6 ռ. վճարելու և Ը-թեան ճաշարանից օգտուելու, ինչպէս արդէն այդ մասին որոշել էր, ուրբաթ, հոկտեմբերի 7-ին, Ընկ. գրադարանի դահլիճում Թիֆլիսի դպրոցների և հաստատութիւնների ներկայացուցիչներից կազմեց մի խորհրդակցական ժողով այդ մասին։ Ժողովին նախագահում էր Կ. Հ. Բ. Ը-թեան խորհրդի նախագահ պ. Ս. Յարութիւնեանը։ Մտքերի փոխանակութիւնից յետոյ՝ ժողովը եկաւ հետևեալ եզրակացութեան.

1. Այժմեանից աւելացնել ձրի ճաշողների թիւը 100 հոգով, որի համար իւրաքանչիւր դպրոցական վարչութիւն կըգտնի այնքան բարերար, որքան իւր դպրոցից որոշուած թուից աւելի աշակերտ կը ճաշի։

2. Յաւելեալ ճաշող աշակերտներին ժամանակ տալ երկու ամիս մինչև դեկտ. 7-ը, մինչև դպրոցի վարչութիւնը ժամանակ ունենայ գտնելու բարերարներ իւր աշակերտների համար։

3. Որքան աշակերտ կը մնան առանց բարերարների, դպրոցների գրամներից դուրս, դրանց համար կ՚կազմակերպուի ընդհանուր ոյժերով մի ներկայացում կամ երեկոյթ, որի արդիւնքը կը յատկացուի անվճար աշակերտների հաշուին։

4. Այս գործը կազմակերպելու համար, ներկայացուցչական ժողովը յարմար համարեց կազմակերպել Խորհրդին կից մի օժանդակիչ մասնաժողով, որ գործի Ընկերութեան անունով։

5. Ներկայացուցչական ժողովը խնդրում է Խորհրդին՝ հրաւիրել մի ընդհանուր ներկայացուցչական ժողով եւ դպրոցների բոլոր ուսուցիչների և հոգաբարձուների, ուրբաթ, ամսոյս 15-ին, ուր և կընտրուի մասնաժողով։

* * *

## Կ. Հ. Բ. Ը-ԹԵԱՆ ԽՈՐՀՐԴԻ ՈՐՈՇՈՒՄՆԵՐԻՑ

1. Խորհուրդը ի նկատի ունենալով Չխարի ճիւղի վարչութեան նախագահ Ա. Բ. Գափամաճեանի հրաժարականը, որոշեց գրել Չխարի դպրոցի աւագ ուսուցիչ պ. Յակոբ Բանանեանին, որ հրաւիրելով ընդհանուր ժողով կատարել վարչութեան նախագահի և ժամանակը լրացած անդամների ընտրութիւն և ընտրութեան արձանագրութիւնը ներկայացնել Խորհրդին։

2. Ընկերութեանս հիւանդանոցի վերահսկողութեան համար ընտրուեց մի մասնաժողով հետեւեալ անձնաւորութիւններից՝ իշխ. Մ. Թումանեան, բժ. Աղասարեան, Ս. Բալաղեան, Բ. Մամուլեան և Յ. Շահնազարեան, որոնց յանձնարարուեց ծանօթանալ հիւանդանոցի գործերին և զեկուցանել Խորհրդին։

3. Կարդալով Թիֆլիսի փաստաբան պ. Թովմաս Խանդուլեանի յայտարարութիւնը, որով նա 500 ռ. է նուիրում վրացախօս վայրերից մէկում իւր անուան մի դպրոց պահելու, որոշեց այդ դպրոցը պահել Սագարէջօ գիւղում և յայտնել նրան շնորհակալութիւն։

—

Խորհուրդը շնորհակալութեամբ ստացել է Սոֆիա Վաս. Արղութեանի միջոցով՝ Երա և Դաւիթ Անանեաններից յօգուտ Սանահնի դպրոցի... 300 ռուբլի։

* * *

Հ. Կ. Կոմիտէի որբանոցների պահեստի յանձնաժողովի անդամ Սա. Մալխասեանը հեռագրում է Ախալցխայից, որ այնտեղ կարելի է ճարել մեծ քանակութեամբ իւղ և լոբի։

* * *

Հ. Կ. Կոմիտէն իւր վերջին նիստում Տրապիզոնի համար լիազօր է ընտրել Արշ. Առաքելեանին։

* * *

Հ. Կ. Կոմիտէն Սարիղամիշից 150 որբ փոխադրեց Ալէքսանդրապոլ։

---

# ՎԵՐՋԻՆ ՀԵՌԱԳՐԵՐ

## ՀԱՅ. ԿԵՆՏՐ. ԿՈՄԻՏԷԻՆ

Կարինից Զօրեանը հեռագրում է. 25,000 ռ. ստացայ, այլեւ 10,000 ռ.։ Երէկ Ս. Տէր Յակոբեանը եկաւ, սպասում ենք անհամբեր ալիւրի և բեռնատարքին (տըրանսպորտի). որբերին ուղարկեցի. ծայր աստիճան կարիք կայ տաք շորերի։

—

Ղամարլու—Այվազեանից.

Ալիւրի մեծ պահանջ կայ, խնդրում եմ շուտով ուղարկէք։

—

Իգդիր—Նաջարեանից.

Սօգօրի Վանի շրջանը խնդրում է շուտով հեռագրէք Ձեր Իգդիրի պահեստապետին՝ փոխադարձաբար 50 պուդ շաքար տալ։

—

Սարիղամիշ—Ենգոյեանից։

Ամսիս 7-ին Կարին ուղարկեցի երկու վագոն ալիւր. այսօր ստանում եմ չորս վագոն եւ Սարիղամիշի համար։

—

Եկատերինոդար—Մելքոնեանից.

Դանիչեսկին տալիս է մեզ 19 վագոն ալիւր Գուլկեվիչ կայարանից. խնդրում է շուտով ազատել պահեստը և ալիւրը ուղարկել. ուղարկեցէք նարեադ։

---

## Կ. Հ Բ. Ը.-ԹԵԱՆ ԳԱՂԹԱԿԱՆՆԵՐԻ ՊԱՐԵՆԱՒՈՐՄԱՆ ԳՈՐԾԸ ՊԵՏԱԿԱՆ ՄԻՋՈՑՆԵՐՈՎ.

Ընկերութիւնս հարկաւոր գումար փոխադրելով Դիլիջան և Նոր-Բայազետ իր լիազօրներին՝ պատուիրեց գնել մեծ քանակութեամբ կարտոֆիլ գաղթականների համար։

Ի նկատի առնելով, որ նաւթի եւ անչափ կարիք կայ, ինչպէս տեղեկացնում են մեզ Մեծ-Ղարաքիլիսայից, որտեղ վերջին ժամանակ նաւթի ճգնաժամի միջոցին փութը ծախւում է եղել 30 կոպ., Ընկերութիւնս համաձայնուել է «Սվէտ» նաւթային ընկերութեան հետ մեր պահեստներին նաւթ մատակարարելու բորսային գնով, և արդէն կարգադրութիւն է արուած 6 վագոն Բագուից ուղարկել հետեւեալ վայրերը՝ Ղարաքիլիսա 1 վագոն, Ալէքսանդրապոլ՝ 1, Սարիղամիշ՝ 1, Երեւան՝ 1 և Էջմիածին 2 վագոն։

Կարգադրուել է նոյնպէս Բագւում գաղթականների համար գնել բրինձ։

---

# Քրոնիկոն

Գեն. Թամամշեան ամսոյս 14-ին մեկնեց Դիլիջան, Հայկական Կենտրոնական Կոմիտէի նախագահ Գ. Ս. Յարութիւնեանի հետ։

* * *

Վրաստանի էկզարխը միջնորդել է, որ ուղղափառների հագեար սեմինարիան, որ հիմա վիրաւոր զինուորական հիւանդանոցի է վերածուած, դատարկուի դպրոցական պարապմունքների համար։

* * *

Ծանր կերպով հիւանդացել է վրաց դերասան և դրամատուրգ Վ. Գունիան։ Նրան բժշկում են երեք վրացի և հայազգի բժ. Բաթանեանը։

* * *

Գ. Արմէնեանի ընկերութեամբ կազմուել է հայ դրամաօպերային խումբ։ Ռէպերտուարի մէջ մտնում են մի շարք ինքնուրոյն օպէրետներ և մի քանի քնարական օպէրաներ, ինքնուրոյն և թարգմանական—վերցրած ազգային և արեւելեան լեգենդաներից։

Խումբը արդէն մեկնել է Երեւան, որտեղից կը շարունակի իր ճանապարհը դէպի Թաւրիզ, ապա Թէհրան ու Անդրկասպեան երկիրը, իսկ այնուհետեւ Ռուսաստանի գլխաւոր քաղաքները՝ Մոսկուա, Պետրոգրադ և այլն։

* * *

Տպագրուած է վրաց բարեգործական ընկերութեան 1915 թուի գործունէութեան հաշիւը, որից երեւում է որ ընկերութիւնը 1915 թուին ծախսել է 182,667 ռ. 69 կ.։

* * *

Քաղաքային վարչութիւնը որոշել է՝ Ցիցիանովի վերելքի Կախեթի հրապարակ տանող փողոցն ընդարձակել 10 սաժէնով։

րի պատճառով քանդուելու են մօտ 20 տուն։ Շուտով Դումա կը մտցուի նախագիծը՝ քննելու և հաստատելու համար։

***

Բագւի հոգևոր կրթական «Սաադէթ» ընկերութիւնը որոշել է բանալ բարձր հոգևոր դպրոց, որի նպատակն է լինելու պատրաստել թուրք հոգևորականներ և ժողովրդական դպրոցների համար ուսուցիչներ։ Դպրոցն ունենալու է ինն տարուայ դասընթաց։ Նախագիծ-կանոնադրութիւնը թուրք հասարակական գործիչների քննութեան բովից անցնելուց յետոյ՝ մօտիկ ապագայում ներկայացուելու է պատշաճաւոր իշխանութեան ի հաստատութիւն։

***

Փախստականների որբանոցների պահպանութեան համար գեներալ Թամամշեանը Հայկ. Կենտր. Կոմիտէի պատուաւոր նախագահ. Մխիթար Եպիսկոպոսին ուղարկել է 315,000 ռ. յուլիս, օգոստոս, սեպտեմբեր ամիսների հաշուին։

—

Ներկայումս Թիֆլիսումն է «Бирж. Вѣд.»-ի թղթակից Ժ. Կ. Մ. Շիրազի, որը եկել է Անդրկովկաս յատկապէս ուսումնասիրելու հայ գաղթականութեան վիճակը և առհասարակ ծանօթանալու տիրող դրութեանը։ Պ. Շիրազին այս օրերս մեկնելու է Ալէքսանդրապոլ, Երևան և Էջմիածին, ուր ներկայանալու է Վեհ. Կաթողիկոսին։

Անդրկովկասից նա անցնելու է Պարսկաստան։ Պ. Շիրազին տիրապետում է արևելեան լեզուներին։

—

Ճանապարհների հաղորդակցութեան մինիստրութեան կարգադրութեամբ առաջիկայ նոյեմբերին հաստատուելու է Վլադիկաւկազ—Պետրոգրադ ուղղակի հաղորդակցութիւն։

—

1918 թուին լրանում է Ալէքսանդր II Կայսեր ծննդեան 100-ամեակը։ Այդ տօնը յաւերժացնելու համար Պեատիգորսկի քաղաքային դուման որոշել է 1861 թուի փետրուարի 19-ի յիշատակին կառուցանել մի ժողովրդական տուն՝ «Ալէքսանդր II Ազատարար Կայսեր Ժողովրդական Տուն» անունով։

—

Հոկտեմբերի 15-ին տեղի ունեցաւ Նուխու վարժարանի (գիմնազիայի) հանդիսաւոր հիմնարկէքը։ Նուխեցի Հաջի Մահմեդ Սադըխ Ալիևը շինութեան կառուցման գործի համար նուիրել է 100,000 ռ.։

—

«Կոպէկ» հրատարակչական ընկերութիւնը մօտ ժամանակներս Պետրոգրադում կը հրատարակի «Лучъ» անունով մի մեծ օրաթերթ, որը ամերիկական լրագրերի նման բաղկացած կը լինի 14—18 երեսներից։

—

Թիֆլիսի բարեգործներից մէկը խոստացել է խուլ ու համրերի համար իր ծախքով շինել դպրոցական շէնք. այդ առթիւ խուլ ու համրերի դպրոցի հոգաբարձութիւնը դիմել է Թիֆլիսի քաղաքային վարչութեան՝ ձրիաբար մի կտոր գետին յատկացնելու այդ նպատակին։

***

Արդէն Թուրքեստանցիների զօրակոչը յայտարարուած է։ Հաւաքելու են 200,000 հոգի, որոնք աշխատելու են ճակատում, թիկունքի պաշտպանութեան համար։

***

Բագւում կազմակերպուել է «Հայկական մանկապարտէզ հիմնող ընկերութիւն»։ Հիմնուելիք մանկապարտէզում ընդունուելու են 40 հոգի, որից կէսը ձրի, կէսը վճարովի։

Բագւում ապրող մօտ 30 հազար հրէաններն էլ արդէն բաց են արել հրէական մանկապարտէզ այբբենական բաժնով։ Նոյն միտքը յղացել են նաև Բագւի թիւրքերը։

***

«Кавказъ»-ը հաղորդում է, որ Վանի շրջանապետ Տերմէնի փոխարէն նշանակուել է գեներալ-մայոր Բարկովսկին։

***

«Турк. Гол.»-ը հաղորդում է, որ Ձերզանի նախկին նահանգապետ գեներալ Դիպլուսը նշանակւում է Հայաստանի ընդհանուր նահանգապետի օգնական։ Հայաստանում պաշտօն են ստանձնում նաև Նամանդանի գաւառապետ Կրոշկովը և Օշի գաւառապետի օգնական Գորոդինսկին։

***

Հ. Կ. Կոմիտէի հոկտ. 12-ի նիստում պ. Գ. Էզիլեանը մի ընդարձակ զեկուցում տուեց գաղթականական որբանոցների մասին, ուր նա շրջագայել էր ամառուայ ընթացքում։

Զեկուցումից յետոյ որոշուեց կրկին մի ժողով գումարել Թիֆլիսի բոլոր որբանոցների խնամակալների ներկայութեան, իմանալ նրանց կարծիքները զեկուցման մէջ շօշափուած հարցերի մասին և ապա թէ պ. Էզիլեանի զեկուցումը յանձնել տպագրութեան։

# ՏԱՃԿԱՀԱՅԵՐ

## ՄՈՏԿԱՆ

Տաւրոսի լեռնաշղթայի արևելեան բազուկը, որ տեղացիներից կոչւում է Սև-սար և Սալնոյձորի կամ Բաղէշի կիրճով ու Ռահվայի անցքովը անջատւում է Ընձաքիսար կամ Կապուտկող լեռներից, իր բարձունքների վրայ կրում է Մոտկան լեռնագաւառը։

Սահմաններն են՝ արևելքից Բաղէշ կամ Սալնոյձոր, արևմուտքից՝ Սասուն, հիւսիսից՝ Խոյթ և հարաւից՝ Խարզան։

Լեռներ.—Մարաթու, Կուփի, Հորմոր, Շնագ, Փորակ, Մաղիքար, Խալըմա*), Նխուն են։

Գետեր.—Բերկրցու գետ, Մրցաւաց գետ, Բակնոտու գետ, Երախու գետ, Մցու գետ. այս հինգ վտակները միանալով կազմում են Մէյտանեայ գետը։

Բերդեր (աւերակ այժմ) Գլխուբերդ, Մաղիքար, Ուրուս, Տարլի, Կելհօկ, Բուկնոտ, Բերվու են։

Բերքերն են ցորեն, գարի, սպիտակ գլգիլ և բանջարանոցի բոյսեր։ Մոտկանի մեղրը թերևս աշխարհի ամենից ընտիր մեղրն է։

Անտառներէն ստանում են գուզ (ընկոյզ), քարճին (փոքր տանձ), թութ, բղինչք (բռնչի—գաղտաղան), հաղող (խաղող), ալուճ, թուզ, կոխազ (կեռաս), սալոր, շլոր (մանր սալոր), սերկևիլ, խնձոր, փոխըմբի (մեղ անծանօթ մի միրգ), կաղին (բլուտ՝ և ուչխական կաղին կամ պնտուկ, այսինքն՝ ֆնդըղ), եղվարդի (մանր կարմրաւուն պտուղ է), զառինջ (զառն և թթու խնձոր) են։

Մոտկան խոտաւէտ, անտառաշատ և ծաղկազարդ մի գաւառ է. հետաքրքրութեան համար առաջ եմ բերում մի քանի ծաղիկների անունները.—ձնձաղիկ, չաչիկ, շաւեռ, զառընկալ, իրիցուկ, գինարբ, մանիշակ, սօսըն (շուշան), բայրուն (բրաբիոն?), նարգիզ են են։

Մոտկանի հայաբնակ գիւղերը կոտորածից առաջ ունեցած բնակիչներով հետևեալներն էին.

Խարդգող 10 տուն, Կորվու 20, Կարբ 10, Բրուտք 15,

*) Քարտէզի վրայ նշանակուած է Կալամալա։ Տեղական աւանդութեան համաձայն Նոյի տապանը «իջեր է վըր Խալըմաու, սա տուեր է Մարաթուկին, Մարաթուն լէ ճամբերէ մըր Մասիս»։

*Մղուք 30, Հոռսենք 8, Նեղեն 20, Միրիթաղ 10, Արութաղ 15, Աշըներ 100, Խուր 25, Քաշաղ 40, Կնձու 50, Ուրուս 10, Մցի 25, Մեծձոր 5, Շէն 60, Մրցանք 10, Բոկնոտ 16, Նիչ 20, Գըրխու 70, Զրտու 20, Արտրէր 15, Սղունդ 30. ընդամենը 24 գիւղ և 624 տուն։*

*Իւրաքանչիւր տունը կամ ընտանիքը 10 անձ հաշուելով, ստանում ենք 6240 անձ, որոնցից հազիւ 1000 անձ կրցած է ազատուել կոտորածից և անցած Ռուսաստան։*

*Մոտկան շրջապատուած է խիստ անառիկ լեռներով, անանցանելի ծերպերով ու կիրճերով և անթափանց խիտ անտառներով, որոնք ընձեռնում են անկախութեան միջոցներ հետևեալ ըմբոստ, վայրենաբարոյ և բարբարոս քրդական աշիրէթներուն. այդ ցեղերն են. 1. Մալա-Ոյօ (Ոլոյի տուն), 2. Բուբէնցիք, 3. Մալա-Մահմուտ, 4. Էխըքցիք, 5. Դոնանցիք, 6. Քէպուրցիք։ Սրանք աղալարներ կամ թոռըններն են, որոնք հաշւում են 1,500 տուն։ Սրանցից զատ կան նաև ռ ա յ ե ա ն ե ր հետևեալ անուններով.—1. Զանդարի, 2. Զիարէթի, 3. Թպէա, 4. Զիդանցիք, 5. Դատվանցիք, 6. Բաթըլմաղ, 7. Շէնըքցիք, 8. Թըքանանք, 9. Կուռան, 10. Ուսխա, 11. Խլորիկ, 12. Սամրու։ Սոքա ևս 7—800 տան չափ են հաշւում։*

*Մոտկան՝ իր անմատչելի դիրքի և ժողովուրդին բարբարոսական վարք ու բարքին պատճառաւ կուլտուրայի անհաղորդ և միևնոյն ժամանակ կուսական մի երկիր է, ուր ճամբորդ ոտք կոխած չունի։ Թէ քուրդ և թէ հայ տարրը նահապետական պարզ նիստ ու կաց ունի։ Այնտեղ տիրում է ֆախերութեան դրութիւն, որ մի տեսակ ճորտութիւն է։ Իւրաքանչիւր ցեղապետ ունէր որոշ թուով հայ ֆախերներ, որոնք ենթակայ էին ճորտական կամ ֆախերութեան տուրքի։*

*Հայերը դպրոց չունէին և ունենալու էլ հնարաւորութիւն չկար. արգելւում էր այդ քիւրդերից. բայց իւրաքանչիւր գիւղն ունէր իր եկեղեցին, որ նախնիքներից էր մնում իբր ժառանգութիւն։ Վերոյիշեալ 24 հայ գիւղերն ունէին միայն ութ քահանայ, որոնցից վեցը սպանուած են և միայն երկուքը կրցած են ազատուել։*

*Մոտկանի հայութեան կոտորածը սկսում է Տարօնոյ կոտորածի հետ միաժամանակ. հրամանը տրւում է Բիթլիսի կուսակալից. գործադրողն եղել է գայմագամը, որու կառավարական կեդրոնավայրն եղել է Դատվան (ոչ թէ Խլաթի Դատվան) գիւղը։ Նախ ժանդարմաներու միջոցաւ երիտասարդութիւնն ու կռուելու ընդունակ տղամարդիկ զինուորութեան պատրուակին տակ խումբ-խումբ հեռացնում են գիւղից ու կոտորում, ապա քրդերին են հրամայում, որոնք սկսում են անխնայ թալանել, սպանել, այրել և անլուր խժդժութիւններ գործել անզէն մարդերու, կանանց և երեխաներու վրայ։*

*Քուրդ ցեղապետներից ամենաշատ բարբարոսութիւն անողներն եղել են Մալա-Մահմուդները, մանաւորապէս Հաջին ու Արֆօն, որոնք Գըեխու 200—է աւելի հայերը հաւաքելով փակում են երկու տներու մէջ և կրակ տալով վառում են։ «Սըրբ Աղբերիկ չէ գինայ, ասում էր ինձ այս տեղեկութիւններն հաղորդող Բոկնոտցի Ազամ Վարդանեանը, որ 66 ամեայ ուշիմ և բանիմաց մի ծերունի էր, յղի կնկտոց փորեր ճղքեցին ու գերեխէք որէ քաշեցին, հընդէ ես խոա (այս) աչքերով տեսայ»։*

*Եղել են և բարեկամ ու պաշտպան ցեղապետներ էլ, որոնց անունները նշանակել աւելորդ եմ համարում. սրանց շնորհիւ վերոյիշեալ Ազամ Վարդանեանը, իր երկու որդիք՝ Սիմոնի, Խաչիկի, եղբայրը՝ Յովհաննէսի և Նչեցի Դիւան անուն քրդու օգնութեամբ 40—50 հայ կին և երեխայ պաշտպանում են 200-նոց քրդական մի խուժանի դէմ և ամբողջ մի գիշեր կռուելով փախցնում են Նիչ, ուր մի ժամանակ մնալուց յետոյ փախչում են Մուշ և ազատւում։*

*9 հոկտ. 1916* *Ս. Մովսէսեան*

*Մեծ-Ղարաքիլիսա*

# Գ ե ղ ա ր ու ե ս տ

## ԱՐՁԱԿ ԲԱՆԱՍՏԵՂԾՈՒԹԻՒՆ

## ՏԱՏԻՍ ՎՐԷԺԸ

*Տատ, վերցրի դաշոյնս,*
*Եւ վրէժից թափից*
*Իջայ գունագեղ կանաչ ձորին մէջ,*
*Մի գեղ քրդուհի*
*Նըստել՝ սիրազեղ իր սիրտն էր երգում.*
*Մերկացրի դաշոյն, մօտեցրի նրան,*
*Նա երգեց շատ քաղցր,*
*Հըրուտ հայեացքներն աչքիս բըռընկեց,*
*Սիրտըս տըրտրուեց.*
*Նրա կըրծքին մէջ սէրն էր այրւում...*
*Տատ, ներիր դուն ինձ,*
*Վրէժդ զոհեցի նրա վառ սիրոյն։*

*Ելայ գետափին, ընկել էր այնտեղ մի անմեղ մանուկ.*
*Վերցրի դաշոյնս.*
*Ժպտաց նրա դէմք,*
*Շուշանի վրայ շողուած շողերի մեղմով,*
*Դաշոյնս դողաց, հայեացքս մոլորուեց...*
*Տատ, ներիր դուն ինձ,*
*Ես սարսափում եմ անմեղութիւն մորթելու։*

*Բարձրացայ սարին.*
*Հիւծած ու դեղնած մի այրի այնտեղ,*
*Ծունր էր չոքել շիրիմին վրայ,*
*Եւ հեծեծանքով ցաւեր հառաչում։*
*Դաշոյն վերցնել դառն տանջանքի դէմ,*
*Տատ, նըրա անէծքից հոգիս կը փղձկի։*

*Իջայ ես պարտէզ.*
*Նստել էր այնտեղ թշնամին հպարտ,*
*Խըմում էր գինին, անիծում տանջանք,*
*Բըռնեցի նրան,*
*Խաչաձևեցի ոճրոտ ձեռները,*
*Ինչպէս մահուանդ օր քու բազուկները*
*Ջարդուած,*
*Մերկացրի դաշոյնս.*
*Անիծեց նա ինձ,*
*Բայց վըրէժիդ ուժով կատղեց ձեռներս,*
*Ջարկի պըրանոց՝ իր ճոխ սեղանին,*
*Վերցրի բաժակ և խմեցի*
*Նրա թունաւոր սեցած արիւնից։*
*Տատ, օրհնիր դուն ինձ,*
*Այս քու վրէժն է։*

*Ն. Բայազիտ*

*Անուշաւան Լէոօ*

# Գրականութիւն

## ՀՈՂԻՆ ՍԷՐԸ

Ոչ ոք կը հաւատար, որ նա պիտի կատարէր իր ըսածը։

Ոչ մէկ աղաչանք կարողացաւ ազդել, ոչ մէկ բռնութիւն՝ շարժել զայն իր տեղէն, հեռացնել՝ իր տնէն։ Ժայռի պէս պինդ ու հաստատ կամքով որոշեց մնալ։ «Թէ մեռնիմ, իմ տան մէջ կը մեռնիմ», ըսաւ ու մնաց։ Իր էութեան արտայայտութիւնն էր այդ։

* * *

Երկու օր էր ինչ կը պարպուէր քաղաքը։ Կը հեռանային վերջին մնացորդներն ալ.—տկարները, ծերերը, հիւանդները... Ամենէն անկարներն անգամ ոյժ էին ստացեր և կը փորձէին փրկել իրենց ցաւագար գոյութիւնը...

Քաղցր է կեանքը...

* * *

Մինչև իրիկուն ծերունին դիտեց այս գլխապատառ փախուստը, ապա ներս մտաւ, խնամով կողպեց դուռը ու պարտէզ ելաւ։ Թեթև հով մը, ծաղիկներու բուրմունքով հոտաւէտ խփեց իր ճակտին ու ծածանեց ճերմակ մազերու փունջերը։ Եօթանասուն տարիներու բեռան տակ կռացած մէջքը ուղղուեցաւ սակաւ ինչ, և ուրախութեան շող մը լուսաւորեց իր խորշոմած դէմքը։

Ինչքա՜ն ուրախ էր, որ չգնաց...

Եւ ինչպէ՜ս երթար. ինչպէ՜ս թողուր այս բոլորը, որոնք ինքն էր խնամեր, իր ձեռքերովը տնկեր, մշակեր, ջրեր։ Ինչպէ՜ս թողուր այս սպիտակ փոքրիկ տնակը, այս պարտէզը, այս ծառերն ու ծաղիկները։ Այստեղ ամեն ինչ այնպէ՜ս մօտ էր իր սրտին, այնքա՜ն ծանօթ իր հոգուն, որ կարծես իր իսկ էութեան մէկ մասնիկը լինէր։ Այստեղ ամեն իր յիշատակ մ'ունէր, ամեն տունկ դէպք մը կը պատմէր իրեն, դէպք մը տրտում կամ անո՜ւշ...

* * *

Դանդաղ յառաջացաւ ծերունին փոքրիկ արահետով, այնքան սիրուն ու կոկիկ, որ ինքն էր շիներ իր ձեռքով, մօտեցաւ խնձորենու տակ դրուած խոշոր նստարանին ու նստաւ։

Վերջալոյս էր. արևմուտքի ամպերու կարմիր-ծիրանի վարագոյրը վարդագոյն շողերով կօծէր պարտէզները քաղաքին, որու վրայ կիջնար մահուան ու աւերի լռութիւնը...

Վարդագոյն շողերը լեցուեր էին ծերունու պարտէզը։ Իրիկուան վերջին լոյսերը կանդրադառնային մուգ-կանաչ տերևներու վրայէն։ Ծառերու երկար ստուերները կը տարածուէին պարտէզին մէջ, ու խառնուելով իրար կը կազմէին մի թեթև խաւար, որը կը պահուըտէր կարծես անկիւններուն խորքը ու ծառերու փէշերուն տակ։ Լռութիւն մը, ահաւոր ու մահասարսուռ, կիջնար քաղաքին վրայ ու պարտէզին...

Ծերունին իր շուրջը նայեց... Այնտեղ ամեն ինչ իր անցեալէն կը պատմէր, ամեն ինչ, այլևս իր յաւիտեան կորած, քաղցրութիւններէն կը խօսէր։ Ու իր դէմքը, թեթև վարդագոյն շողերու մէջ, մռայլեցաւ։

Ի՞նչ կը մտածէր նա։ Ի՞նչ փոթորիկներ, ի՞նչ յոյզեր կը խռովէին իր հոգին այդ ուշ պահուն, խորհրդաւոր լռութեան քօղով պատած պարտէզին մէջ։ Ի՞նչ էր այդ պահուն իր հոգու վիճակը, որ ամայացած քաղաքին պէս սգաւոր էր ու տրտում... Ամբողջ տասնեակ տարիներու յիշատակները, տրտում կամ ուրախ, անուշ կամ վշտալի, կը կուտակուէին իր էութեան խորքը ու հրդեհի կուտային հոն, դեռ ինչ որ կանգուն էր։

Ահաւո՜ր անօրինակ հրդեհ, հոգու կործանո՜ւմ...

* * *

Ահա իր դիմացն է ճիշդ այն գեղեցիկ ու դալար տանձենին, որ իր կրտսեր որդու տարիքին էր։ Թնդանօթի գնդակ մը ամիսներ առաջ փրցուց անոր ճիւղը։ Ու քանի մ'օր վերջ թընդանօթի գնդակ մըն ալ տարաւ իր վերջին գաւկին ոտքը, ու գետին տապալեց...

Վեր կացաւ ծերունին հայրական անհուն խնամքով, գորովանօք շփեց ծառի բաց վէրքը, որպիսի փափկութեամբ պիտի դիպնար իր զաւկի վէրքին, որ չը ցաւցնէր. շոյեց մի քանի անգամ, շարժեց սպիտակափառ գլուխը, ու նորէն վերադարձաւ իր տեղը։ Նստաւ ու գլուխը թեքեց դէպի վարդենու այն փոքրիկ, նիհար ճիւղը, որ կերկարէր նստարանին վրայ։

* * *

Գիշերը կիջնար տակաւ... Ստուերները աւելի դաժան տեսք մը կուտային ծերուկի դէմքի խորացող կնճիռներուն։ Կախուած յօնքերու տակէն արտասովոր փայլով կը շողային ծերունու աչքերը, որոնք կը շարունակէին դիտել տակաւին շրջապատը, յիշատակներու այդ բոյնը...

Ի՞նչ լաւ էր հիմա, իր տան մէջ, որ իր քրտինքո՜վ ու չարչարանքո՜վ էր կառուցեր իր փոքրիկ, սիրուն պարտէզին մէջ, որ իր մտքի ու ձեռքի ստեղծագործութիւնն էր. իր ծանօթ ու մտերիմ ծաղիկներուն քովիկը, շրջապատուած սիրելի ու անուշ յուշերով...

Գոհ էր. բայց և՛ այնպէ՜ս տրտում...

Կարող էր մեռնիլ ա՛լ։

* * *

Առաւօտ էր... Ամառնային պայծառ արևը կը ժպտէր ամայացած քաղաքին։

Ու խնձորենին շուք կանէր ծերուկին վրայ, որ կը քնանար յաւիտենական քնով։

Յ. Յովհ—ն

---

## ՄԱՅՐԸ

(Պատմ. դ'Իւուայի)

Ես վիրաւորներին օգնութիւն ցոյց տուող Ընկ. անդամ եմ։ Մեր Ընկերութիւնը ինքն իրեն համար առողջապահներ (սանիտարներ), գթութեան քոյրեր և հիւանդապահներ է ընտրում։ Թեկնածուների ընտրութիւնն այն ժամանակ է տեղի ունենում, երբ նրանք գրաւոր պարտաւորւում են պատերազմի ընթացքում ծառայել այնտեղ, ուր կուղարկեն նրանց։

Մենք տեղեկութիւններ ենք հաւաքում այն դրդապատճառների մասին, որոնք առիթ են ծառայել մեր թեկնածու-թեկնածուհի կանդիդատներից իւրաքանչիւրին գնալու վիրաւոր հերոսների օգնող դժուարին ճանապարհով։

Հայրենիքի համար պատերազմի դաշտում քաջութեան և անձնուիրութեան բազմաթիւ օրինակներ են տեղի ունենում, բայց մենք հպարտութեամբ կարող ենք հաստատել, որ Ֆրանսիայի թիկունքում, թէ մէկը և թէ միւսը անվերջ չափերի է հասնում։

Ներքև բերուած երեք նամակները՝ ուղղուած Լուիզէ Ն-ին, Խ...ում, ամբողջովին հաստատում են գթութեան քոյր Լորէն Բ.-ի սխրագործութեան մասին ունեցած մեր բոլոր համոզումները։

### ՆԱՄԱԿ ԱՌԱՋԻՆ

«Վուաղէ, 2 օգոստ-ի 1914 ամի

«Իմ բարի, թանգագին քոյր Լո՜ւ։

«Այսօր մեր գունդը դուրս է գալիս մասնակցելու ազատագրական պատերազմին։ Չգիտեմ ո՞ւր կերթանք, բայց այդ միև

նոյն է։ Մտածիր միայն, թէ ես ինչ լաւ արի, որ կամաւոր գրուեցի։ Մինչեւ 18 տարեկան լինելու պատճառով ինձ էլ չպիտի տանէին զինուորակոչի ժամանակ։

«Բայց բանն այդ չէ։ Վայրկեաններս հաշուած են և ես պիտի շտապիմ վերջացնել իմ անջատում-նամակս։ Ես արդէն մայրիկին ու ժանին գրել եմ։ Նրանք այժմ մեր Շեպերետեան ագարակումն են։ Ես պէտք է քաջալերեմ ժանին։ Խեղճ եղբայր, ինչպէս կը ձանձրանայ։ Նրա 15-ը նոր է լրացել և պէտք է նստի ձեռները ծալած, այն էլ այն ժամանակ, երբ բոլորը գործի են։

«Նամակս չափից դուրս անկապ է, մօրքոյր Լիւ, ճիշտ չէ։ Բայց ես ուրախութիւնից գլուխս կորցրել եմ։

«Հենց նոր տուին ինձ մայրիկի գրած բաց նամակը։ Երբ նրան նամակ գրես, նորից կրկնիր, որ ես շատ եմ սիրում նրան և մեծարում եմ իր բարութեան ու քաջութեան համար։

«Լսիր, թէ ինչ է գրում ինձ։

«Գերմանացիք են ուզել պատերազմ։ Մեզնից իւրաքանչիւրը պարտաւոր է իր պարտքը կատարել։ Կարող ես հաւատացած լինել, որ ես ու ժանը անդադար կը մտածենք քո մասին, իսկ դու պէտք է մոռանաս մեզ և միմիայն յաղթանակի մասին մտածես։ Ժանը բոլոր սրտով համբուրում է քեզ, իսկ ես օրհնում եմ իմ որդուն։ Յաղթող վերադարձիր տուն։

«Նամակի տակ ստորագրուած մայրիկի անունը, իմ աչքում բոլորովին այլ նշանակութիւն ունի։

«Լոտարինգիան... Մեր Բէթղեհիմի աստղը, մեր յոյսը, մեր դրօշը։

«Ցտեսութիւն, թանգագին մօրաքոյր։ Հազարաւոր համբոյրներ քրոջդ որդի Ֆրանսուա Բ..-ից»։

ՆԱՄԱԿ ԵՐԿՐՈՐԴ

«Շեպերետայի քաղ. խորհրդարան
13 սեպտ. 1914 թ.

«Տիկին. դուք վկայութիւն էիք ուզել ինձնից Ձեր քոյր՝ Շեպերետայի ագարակատիրուհի Լորէն Բ.-ի մասին, որը մեր հողի գերմանական զօրքի կողմից գրաւուած մասի վրայ էր ապրում։

«Թէպէտ այքնան էլ հեշտ չի ինձ համար Ձեր խնդիրքը կատարել, բայց ես պարտքս եմ համարում հաղորդել գերմանական անգթութեան անբաղդ զոհի քրոջն ամբողջ ճշմարտութիւնը։

«Լորէն Բ.-ն իր 15 ամեայ որդի Ժանի հետ ապրում էր իր ագարակում։

«Սեպտեմբեր 2-ին մեր գիւղը գրաւեցին նախ գերմանացոց ուլանները և ապա նրանց հետեւակ գունդը։

«Գերմանացի զինուորներից շատերը պատերազմից առաջ մեր համայնքում էին ապրում։ Նրանք մատնիչ-դաւաճանի դեր կատարեցին։

«Ձեր քոյրը համարւում էր բարեկեցիկ, նոյնիսկ հարուստ կին։ Գերմանացիք նրան հրամայեցին 80,000 մարկ (100,000 ֆրանկ) վճարել իրենց մօտ եղած որդին ազատելու համար, այնպէս որ նրանց սպաների ասելով՝ նա մեղադրւում էր իր Ֆրանսուա որդուն ֆրանսացոց կամաւորների շարքը մտցնելու համար։

«Նա իր մօտը 80,000 մարկ պատրաստ չի ունենում, ուստի ժամանակ է խնդրում պահանջած գումարը Պարիզի բանկից ստանալու համար։ Բայց գերմանացոց դաժանութիւնը գերիշխում է ագահութեանը. նրանց համար, եթէ կարելի է այսպէս ասել, յանցագործութիւնը քաղցրութիւն, վայելք է։

«Իր խնդիրքը կատարելու համար Ձեր քրոջը մի շաբաթ ժամանակ էր հարկաւոր, մինչդեռ մի ժամ միայն տուին, աւելացնելով՝ որ ժամանակամիջոցը լրանալուց յետոյ արդարադատութիւնը (նրանք չէին ճնշւում այդ բառը գործածելուց) կը կատարուի։

«Մի ժամ միայն։

«Ինձ կապուած ձեռքերով՝ հրամայեցին վկայ լինել Ձեր քրոջ որդու վախճանին։

—«Այդ ձեր ուղղակի պարտականութիւնների շրջանակի մէջ է մտնում», ծանրակշիռ կերպով արտասանեց ատեանի գերմանացի սպան։

«Անբաղդներ։ Ձեր քոյրը կապուած էր ջրհորի մուտքի մօտ, իսկ ժանին յենել էին խոհանոցի պատին՝ զօրքի դիմաց, որը պիտի կատարէր այս վայրենի դատավճիռը։ Այս 15 ամեայ տղան մեռաւ հերոսաբար։ Մահուանից մի վայրկեան առաջ ասաց.

—«Ներիր, մայրիկ։ Եղբայրս վրէժխնդիր կլինի մեզ համար։

«Ես անբաղդ մօր հետ ագարակի դռան մօտ՝ նահատակի գերեզմանի առաջ մնացել էի կանգնած։

«Ես յաջողեցի ձեռներս արձակել, իսկ յետոյ արձակեցի Ձեր քրոջը։ Նա լաց չեղաւ։ Կան վայրկեաններ, երբ արցունքը դուրս չի գալիս, այլ կապարի ծանր կաթիլի պէս սրտի վրայ է ընկնում։

—«Պարոն մէր, դարձաւ նա ինձ այն աստիճան հանգիստ ձայնով, որ ես նոյն իսկ վախեցայ այդ հանգստութիւնից. դուք բարի չէ՞ք լինի օգնելու ինձ, թաղելու որդուս այն խնձորենու տակ, որտեղ նա սիրում էր նստել ու կարդալ։

«Ես կատարեցի նրա խնդիրքը։

«Այն ժամանակ նա ծունկ իջաւ գերեզմանի առաջ և մրմնջաց.

—«Այժմ գնացէք։ Դուք, անկասկած, նման ձևի մի պարտականութիւն ուրիշ տեղ պիտի կատարէիք։

«Ափսոս։ Այդ ճիշտ էր։ Ամբողջ համայնքում աւերածութիւն, յուսահատութիւն և մահ էր թագաւորում։

«Այլևս չտեսայ Ձեր քրոջը։ Նա հետեւեալ օրն եւեթ անյայտացաւ։ Ամեն մարդ այնպէս էր զբաղուած իր սեփական անբաղդութեամբ, որ ոչ ոք նրան ուշադրութիւն չդարձրեց։

«Ես շատ ցաւում եմ, որ Ձեզ այս տեսակ անորոշ վկայութիւն միայն կարող եմ տալ։ Բայց Ձեզ տեղեկացրի այն բոլորը, ինչ որ ինձ յայտնի էր։ Ընդունեցէք, տիկին, յարգանքներիս ցաւակցական արտայայտութիւնը։

Մէր Թ. Շ.-ից»

ՆԱՄԱԿ ԵՐՐՈՐԴ

23 հոկտ. 1914 ամի

«Լուիզա, թանգագին քոյրիկ, ներիր երկար լռութեանս համար։

«Նրանք գնդակահարեցին Ժանին։ Ֆրանսուան սպանուեց պատերազմում։ Ես ուզեցի ինքնասպանութեամբ վերջ տալ կեանքիս, բայց Տէրը մի հասարակ զինուորի շրթունքներով հրամայեց ինձ ապրել։

«Այդ այսպէս եղաւ։ Վիրաւորներ էին բերում. կառքը կանգնեց ճիշտ իմ կանգնած անկիւնի մօտ։ Ես ինչո՞ւ նայեցի նրա վրայ, ինչո՞ւ մօտեցայ այդ տանջուողներին։ Ես էլ չգիտեմ և չեմ էլ կարող բացատրել։

«Դիմացս պառկած էր մի վիրաւոր զինուոր, այնպէս երիտասարդ, ինչպէս որդիքս։ Նա տաքութեան մէջ էր և ոչինչ չ'արտայայտող աչքերով վրաս էր նայում։ Յանկարծ նա մի շարժում արեց, կարծես ուզում էր իմ վրաս նետուել, բայց նոյն վայրկեանին մի խղճալի տնքոցով նորից բարձի վրայ ընկաւ։ Այդ ժամանակ թախծոտ, ճիշտ երեխայի պէս շշնջաց՝ «մա՛յրիկ»։

«Այն ժամանակ ես հասկացայ, որ նրա ձեռքն է բերել ինձ այստեղ. Նա, որ անտեսանելի կառավարում է աշխարհը։ Ես զրկուել եմ երեխաներիցս. իսկ միևնոյն ժամանակ ինձ մայր են կոչում։ Ես հասկացայ, Լուիզա, և անմիջապէս հասկացայ, թէ ինչ է պահանջում ինձնից Ստեղծողը։ Նա ուզեց, որ այս տանջուող երիտասարդների բացակայ մայրերին ես փոխարինեմ։

«Այլևս չեմ լաց լինում, չեմ յուսահատւում։ Իմ հարազատ

*գերեզմանները հեռւում են մնացել… Ես կեանքի նոր շրջան եմ մտնում։*

*«Ես գթութեան քոյր կըլինեմ, իսկ բոլոր Ֆրանսիայի վիրաւորները՝ իմ զաւակները։*

*Լորէն. Բ.»։*

*Թարգմ. Խ. Եգանեան*

---

# Գիտական

## ԼՈՐԴ ԲՐԱՅՍ

## ՑԵՂԱՅԻՆ ԶԳԱՑՈՒՄԸ

### *ՈՐՊԷՍ ԱԶԴԱԿ ՊԱՏՄՈՒԹԵԱՆ ՄԷՋ*

### Առաջաբան

*«Համբաւաբերի» վերջընթեր՝ 40 համարում խմբագրութիւնս տպագրելով մեծանուն հայասէր անգլիացի Լորդ Ջէյմս Բրայսի պատկերը, կենսագրականը և համառօտ քաղաքական գործունէութիւնը՝ մանաւանդ ի պաշտպանութիւն Հայոց դատի, չիշտել էր և նորա իրաւագիտական և պատմագիտական ուսումնասիրութիւնները։*

*Արդ «Համբաւաբերի» այս համարից սկսեալ մեր ընթերցողներին տալիս ենք հայոց դատի այս քաջամարտիկ պաշտպանի «ՑԵՂԱՅԻՆ ԶԳԱՑՈՒՄԸ ո ր պ է ս ա զ դ ա կ պ ա տ մ ո ւ թ ե ա ն մ է ջ» փոքրիկ, բայց ամփոփ և հետալից պատմական ուսումնասիրութեան թարգմանութիւնը։*

*1915 թուականի փետրուարին Լոնդոնի համալսարանի* Keug's College-*ում Լորդ Բրայսը ականաւոր փիլիսոփաների մի ժողովում կարդաց այդ վերնագրով դասախօսութիւն։ Յետոյ էլ այդ դասախօսութիւնը հրատարակել է մի գրքոյկով ժողովրդական լայն խաւերին մատչելի դարձնելու մտքով։ Մօտ 40 էջից բաղկացած այդ գրքոյկը մի ամփոփ, բայց հետալից մի հայեացք է ցեղային զգացման ծագման, ինչպէս նաև պատմութեան ընթացքում նրա կատարած դերի մասին։ Նա լայն ուրուագծերով պարզում է առհմային բնազդների, կուլտուրական-կրօնական ազդակների և միջին դարերում կատարած ազգեցութեան և ցեղային ինքնագիտակցութեան ծնունդը նորագոյն ժամանակներում։*

*Գրքոյկը հայերէնի թարգմանել է պ. Արշակ Սաֆրաստեանը, և Լորդ Բրայսը սրա խնդրանքով գրել է մի համակրական առանձին ներածութիւն հայերէն թարգմանութեան համար։*

*Հայերէն թարգմանութիւնը կ'արտատպուի իբրև առանձին գրքոյկ Հայկական Կենտրոնական Կոմիտէի կողմից։ Գրքոյկիս արդիւնքը յատկացուելու է փախստականների օգտին։*

*Խմբագրութիւն*

### Ներածութիւն

*Քրիստոնէական թուականի առաջին դարերից ի վեր պատմութեան մէջ մի ցեղի կեանքը պահպանելու, նրա գործունէութիւնը հրահրելու և աշխարհին ծառայութիւն մատուցանելու գործում չկայ աւելի ակնառուղի օրինակ ազգային զգացման արժէքին քան այն, որ ներկայացնում է հայ ժողովրդի պատմութիւնը։— Ընդունելով քրիստոնէութիւնը գրեթէ այն ժամանակ, երբ Յիսուսի կրօնքը յաղթանակում էր հռոմէական կայսրութեան մէջ և Մեծն Կոստանդիանոսի օրերից ի վեր դառնում էր տիրապետող հաւատը, հայ ժողովուրդն անկից ի վեր յարատև հաւատարիմ է եղել թէ քրիստոնէութեան և թէ իր ազգային գաղափարին։ Նրանք դիմադրեցին Պարսկաստանի Սասանեան թագաւորների յարձակումներին և պահեցին ինքզինքնին իբրև մի կերպ հեռակայ պատուար հռոմէական կայսրութեան, մինչև որ թիւրքական հեղեղը ԺԱ. և ԺԲ. դարերում արշաւեց նրանց վրայ։ Նրանք միշտ էլ կառչել են իրենց կրօնին և իրենց ազգային զգացման, թէև մանաւորապէս վերջին քառասուն տարիների ընթացքում նրանք շարունակ կրել են կեղեքումներ՝ աւելի քան ոեէ այլ ժողովուրդ։ Նրանց տառապանքները և նոյնիսկ դեռ մեր մտքում թարմ 1895—96-ի կոտորածները չեն խորտակել նրանց ոգին, թէև նրանք յուսաբեկուեցան այն իրողութիւնից, որ քրիստոնեայ պետութիւնները չի հասան նրանց օգնութեան։*

*Վերջին չորս ամսուան ընթացքում նրանք կրում են դեռ ևս աւելի ահաւոր տառապանքներ։ Թւում է որ այս բռպէիս թիւրք կառավարութիւնը ձգնում է բնաջինջ անել ամբողջ ժողովուրդը՝ կոտորածից ազատուածները տեղափոխելով դէպի հեռաւոր վայրեր, ուր նրանցից անուսայն սմանք պէտքերի կարօտութիւնից դատապարտուած են կորստեան։*

*Մեծն Բրիտանիայում մենք որ շատոնց խորապէս համակուել ենք հայերի տառապանքներով և հիացել ենք նրանց տոկունութեանը առ քրիստոնէական հաւատքը և առ իրենց ազգային աւանդութիւնները, լրջօրէն յոյս ունինք որ իբրև արդիւնք ներկայ պատերազմի՝ նրանց համար կը ծագի մի լաւագոյն օր։ Մենք ցանկանում ենք խնդրել նրանցից չյուսահատուել նոյնիսկ խաւարի այս ժամին։ Ապահովաբար Նախախնամութիւնն թոյլ չի տայ, որ կորչի երկրի երեսից մի ժողովուրդ, որ այսչափ շատ տառապել է, և սակայն պահպանել է իր վաղեմի կեանքը, և մշտական ապացոյց է տուել իր մտաւորական կարողութեան։ Անշուշտ օգտակարութեան և պատուի, յուսանք նաև խաղաղութեան և բարօրութեան մի տեղ վերապահուած է նրա համար ապագայում։*

*ԲՐԱՅՍ*

---

### *ՆԱՄԱԿ ԽՄԲԱԳՐՈՒԹԵԱՆ*

*Մեծապատիւ պ. խմբագիր*

*Թոյլ տուէք խնդրեմ ձեր պատուական շաբաթաթերթի միջոցով խորին շնորհակալութիւնս յայտնելու Թիֆլիսաբնակ պ. Միխայէլ Պետրոսեան Միրզոյեանին, որը իր միջոցներից չըխնայեց հարիւր (100) ռուբլի նուիրելու Ջխարի եկ. ծխական դըպրոցի օգտին։ Օրհնեալ լինի նուիրատուն։*

*Ջխարի ծխատէր Ա. քհյ. Գափամաճեանց*

*11 հոկտեմբ. 1916, Թիֆլիս*

---

*Թալա գիւղ (Ղազախ), 30 սեպտ. 1916*

*Մեր գիւղը բաղկացած է մօտ հարիւր տնից, որի $^3/_4$-ը գիւղից բացակայ են պատերազմի պատճառով, և մեր եկ. ծխ. դըպրոցի շինութեան մթերքները պատրաստ են, բայց միջոցներից խպառ զուրկ լինելով հնարաւորութիւն չունինք շէնքը հիմնարկելու, ուստի խնդրում ենք բարերար մարդոց քաղցր ուշադրութիւնը՝ օգնութեան գալու մեր դպրոցի շինութեանը։ Նուէրները կարելի է Բարվանսարայի Բ. Ը. Վարչութեան միջոցով հասցնել հոգաբարձութեանս։*

*Թալա գիւղի եկ. ծխ. դպրոցի հոգաբարձուներ՝ Նիկոլայ Ամիրաղեան, Արշակ Մ… Մկրտիչ Խաչատուրեան.*

## Վ Ր Ի Պ Ա Կ

«Համբաւաբեր»ի № 40-ի «Մանկանոցի խաղեր» յօդուածի մէջ սպրդել են հետեւեալ վրիպակները. 1269 էջ. ներք. 17 տող, տպուած է՝ մտածողական խնդիրը, պիտի լինի մրտածողական խաղերը. 1270 էջ ներք. 12 տող նմանողութեան շարքը—նմանողութեան շնորքը. 7 տող շան առաջն առնելու—շան աւաչն անելու, 1271 էջ ներք. 6 տող, սուկ անելու—սուկ նայելու, 1 տող ձեռվ գրել—ձեռով գրել, 1272 էջ վերեւից 2 տող չեն ազատուած—անջատուած։

Խմբագիր՝ ՍԱՄՍՈՆ ՅԱՐՈՒԹԻՒՆԵԱՆՑ

Հրատարակիչ՝ Կ. Հ. Բ. ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ

## Յայտարարութիւններ

Կ. Հ. Բ. Ընկ. և Կ. Կոմիտէի նախագահ Ս. Յարութիւնեանցի անունով Ամերիկա գաղթած մշեցի Խօսրով Կոնչոյեան 200 ռ. է ուղարկել, մշեցի Ալէքսան Մովսէսեանին յանձնելու համար։ Ալէքսան Մովսէսեանի հասցէն իմացողները թող բարեհաճեն յայտնել Հ. Բ. Ընկերութեան գրասենեակում։

Մուշ շրջանի «Թիլ» գիւղի բնակիչ՝ Բարսեղ Մխիթարեանի որդին Մ. Բարսեղեանը, որ այժմ ողջ-առողջ գտնւում է Աթէնքում, մի նամակով խնդրում է Հ. Կ. Կոմիտէին, տեղեկութիւն տալ իր ընտանիքի և մերձաւորների վիճակի մասին։ Կոմիտէն այսու խնդրում է Մշեցի բոլոր այն հայրենակիցներին, որոնք ուէ տեղեկութիւն ունին յիշեալ Մ. Բարսեղեանի մերձաւորների մասին, փութան հաղորդել նրան, հետեւեալ հասցէով. Monsieur M. Parseghian, chez Messieurs Stepan Iplisjian, passage Hegroponte Athènes (Gréce).

ՔԱՄԱԼԵԱՆՑ Ս. ԴՊՐԻ

Կազմած և Վեհափառից թոյլատրած

**ԿՐՕՆԻ ԴԱՍԱԳՐՔԵՐԸ**

Ա. տարի. Առակներ, Յիսուսի կեանքից պատմուածներ. գինը 15 կ.
Ա. տարուայ նիւթի մշակութիւնը, ձեռնարկ դասատուների համար . . . . . . . 40 »
Բ. տ. Նահապետների կեանք . . . . . 20 »
Գ. տ. Իսրայէլի առաջնորդներ, թագաւորներ . . 35 »
Դ. տ. Մարգարէներ . . . . . . 40 »
Ե. տ. Յիսուսի կեանք . . . . . . 50 »

Դիմել Թիֆլիսի գրավաճառներին կամ հեղինակին՝ Միքայէլեան փողոց № 82. զեղչ 25%. ճամբածախսը գնողի վրայ։

Մեծ Իշխանուհի Տատեանա Նիկոլայեւնայի Գլխաւոր Կոմիտէի նպաստներով հայ փախստական երեխաների համար բացուած և բացուելիք դպրոցների համար հարկաւոր են

ՈՒՍՈՒՑԻՉՆԵՐ-ՈՒՍՈՒՑՉՈՒՀԻՆԵՐ

(Թիւրքահայ և ռուսահայ)

Դպրոցների գործը ղեկավարելու համար ընտրուած **ԴՊՐՈՑԱԿԱՆ ԽՈՐՀՈՒՐԴԸ** որոշելով կազմել ուսուցչական ցանկ, առաջարկում է ցանկացողներին պաշտօնավարել վերոյիշեալ դպրոցներում, փութալ յայտնել Խորհրդին մանրամասն տեղեկութիւններ թէ որտեղից են, քանի՞ տարեկան են, քանի՞ տարի ուսուցչական պաշտօն են վարել, ո՞ր դպրոցում են աւարտել իրենց ուսումը։ Պէտք է դիմել այս հասցէով «Հայ Գաղթականական Ուսումնարանների Դպրոցական Խորհրդին», Училищному Совѣту школъ для дѣтей бѣженцевъ. Тифлисъ. Абасъ-Абадская, 7.

3—3

**Продолжается подписка на 1916 годъ**

на еженедѣльный общественно-политическій и литературный журналъ посвященный вопросамъ армянской жизни.

**„Армянскій Вѣстникъ“**

(первый годъ)

издаваемый въ Москвѣ Ив. Т. Амировымъ при участіи видныхъ русскихъ и армянскихъ литературовъ и общественныхъ дѣятелей.

Подписная цѣна

Въ Россіи: на 1 годъ 6 руб., на 6 мѣс. 4 руб. на 3 мѣс. 2 руб. 50 коп., на 1 мѣс. 1 р. 25 коп. За границу вдовое. Цѣна отдѣльнаго номера 20 коп.

Журналъ будетъ выходитъ по воскресеньямъ. Адресъ редакціи и конторы журнала „Армянскій Вѣстникъ“: Москва, Остоженка, 2-й Ильинскій пер., д. 3. кв. 2.

Редакторъ издатель

Иванъ Томасовичъ Амировъ

Տպարան «ՊՐՕԳՐԷՍ», Լ. Մ. Պօղոսեանի Типографія „Прогрессъ“, Лорисъ-Меликовск. 1. Дозволено военной ценз.

## ՅԱՒԵԼՈՒԱԾ № 42

# „ՀԱՄԲԱՒԱԲԵՐ"-ի

## ԱՆՈՒԱՆԱՑՈՒՑԱԿ ՓԱԽՍՏԱԿԱՆ ՈՐԲ ԵՐԵԽԱՆԵՐԻ

*Քարվանսարայի որբերի անուանացուցակը*

*Հոկտ. 1-ին 1916 թ.*

| № № | ԱԶԳԱՆՈՒՆ ԵՒ ԱՆՈՒՆ | Ծննդավայրը | Տարիքը | Գրագէտ | Ծնողք կան |
|---|---|---|---|---|---|
| 1 | Եղիազարեան Յարութիւն | Պիթլ. Սև Քար | 14 | այո | ոչ |
| 2 | Սիմոնեան Եղիազար | Պառի գիւղ | 13 | » | » |
| 3 | Մուրադեան Գաբրիէլ | » » | 16 | » | » |
| 4 | Շահինեան Սերոբ | Սև-Քար | 16 | » | հայր ունի |
| 5 | Գասպարեան Սահակ | Սենդ գիւղ | 16 | » | ոչ |
| 6 | — Յովհաննէս | » » | 10 | » | » |
| 7 | Կարոյեան Արշակ | Խաչան | 13 | » | » |
| 8 | Նշանեան Ասատուր | Մխկներ | 4 | ոչ | » |
| 9 | Գասպարեան Աւետիս | Բերդակ | 11 | այո | հայր |
| 10 | — Բաղդասար | » » | 7 | ոչ | » |
| 11 | — Բենիամին | » » | 5 | » | » |
| 12 | Կարապետեան Գեղամ | Կուռուպաշ | 10 | » | մայր |
| 13 | Սեդրաքեան Սարգիս | Մխկներ | 15 | այո | հայր |
| 14 | Ղազարեան Միհրան | » » | 12 | » | ոչ |
| 15 | Խէրոյեան Միսակ | Աշրդառ | 10 | » | » |
| 16 | Աւետիսեան Յովհաննէս | Նարեկ | 9 | » | » |
| 17 | Մաթոսեան Օհաննէս | Շատախ | 10 | » | » |
| 18 | Յովհաննիսեան Նշան | Նոր գիւղ | 8 | » | » |
| 19 | Վարդանեան Հայրիկ | Արճակ | 6 | ոչ | » |
| 20 | Պետրոսեան Աւետիս | Շատախ | 8 | » | » |
| 21 | Մկրտչեան Համբարձում | Էջմիածին | 9 | այո | » |
| 22 | Համբարձումեան Սերոբ | Քուէշ | 9 | » | » |
| 23 | — Քերոբէ | | 7 | ոչ | » |
| 24 | Ռուբէնեան Գուրգէն | Վան | 8 | այո | » |
| 25 | Գալուստեան Մուշեղ | Դատվան | 7 | ոչ | » |
| 26 | Մարգարեան Նշան | Սորբա | 8 | այո | » |
| 27 | Ղազարեան Զաքար | | 5 | ոչ | » |
| 28 | Սարգսեան Սերգէ | | 5 | » | » |
| 29 | Տիգրանեան Մխիթար | | 4 | » | » |
| 30 | Դաւիթեան Թէմուր | Նոր գիւղ | 4 | ոչ | ոչ |
| 31 | Պետրոսեան Արմենակ | Նարեկ | 12 | այո | » |
| 32 | Կիրակոսեան Յակոբ | Նորդաղ | 10 | » | » |
| 33 | Ստեփանեան Վաղինակ | Լիզ | 7 | » | » |
| 34 | Մուրադեան Մկրտիչ | Խաչան | 6 | ոչ | » |
| 35 | Մինասեան Դաւիթ | Խիզան | 7 | այո | » |
| 36 | Ծաղոյեան Գրիգոր | Խարիթ | 8 | » | » |
| 37 | Սերովբեան Աւագ | Ծափառ | 9 | » | » |
| 38 | Անթանազեան Սարգիս | Խանրիթ | 8 | » | » |
| 39 | Տիգրանեան Առաքել | Կաշբաշ | 11 | » | » |
| 40 | Յակոբեան Պետրոս | Դշեղ | 7 | » | » |
| 41 | » » Մկրտիչ | » | 9 | » | » |
| 42 | Թադէոսեան Միհրան | Շամշադին | 11 | » | » |
| 43 | Ամիրեան Պարգև | Բիթլիս | 11 | » | » |
| 44 | Մուշեղեան Յովակիմ | | 4 | ոչ | » |

| | | | | | |
|---|---|---|---|---|---|
| 45 | Հայրիկեան Հրանտ | | 5 | » | » |
| 46 | Մարտիրոսեան Անուշաւան | | 7 | » | » |
| 47 | Աւետիսեան Յարութիւն | Դլո | 7 | » | » |
| 48 | Մարտիրոսեան Յովհաննէս | Շատախ | 9 | այո | » |
| 49 | Մուշեղեան Յովսէփ | Վան | 5 | ոչ | » |
| 50 | Ասոյեան Երուանդ | Դիսկ | 8 | » | մայր |
| 51 | Զաքարեան Յարութիւն | Զորմնա | 4 | » | ոչ |
| 52 | Մանուկեան Յակոբ | Շատախ | 13 | այո | » |
| 53 | Բաղդասարեան Դասպար | Փիր բաղալա | 16 | ոչ | » |
| 54 | Դուլթեան Կարապետ | Կարկառ | 13 | այո | մայր |
| 55 | Յակոբեան Մարտիրոս | Վան կոմս | 12 | » | ոչ |
| 56 | Յովսէփեան Ազատ | Վան | 9 | » | » |
| 57 | Խլոյեան Սիմոն | Կառկառ | 11 | » | » |
| 58 | Մանուկեան Մարտիրոս | Խաչան | 15 | » | » |
| 59 | Աստուածատրեան Ռուբէն | Բարգերդ | 16 | » | » |
| 60 | Մուրադեան Ալէքսան | Խիզան | 15 | » | » |
| 61 | Յովսէփեան Յարութիւն | Խորգոմ | 6 | ոչ | » |
| | | | | | |
| 1 | Յարութիւնեան Իսկուհի | Պզտիկ գիւղ | 16 | ոչ | մայր |
| 2 | — Տանզո | — | 13 | այո | » |
| 3 | — Նունուշ | — | 4 | » | » |
| 4 | Ասատուրեան Դեղուհի | Մխկներ | 14 | այո | մայր |
| 5 | Պօղոսեան Շուշանիկ | » | 14 | » | » |
| 6 | Ազիզեան Մարիամ | » | 9 | » | ոչ |
| 7 | Խաչոյեան Ալթուն | Քոել | 10 | » | » |
| 8 | Աւետիսեան Աղաւնի | Բերկրի | 14 | այո | » |
| 9 | — Ռեհան | » | 12 | » | » |
| 10 | Գասպարեան Ուստիան | » | 12 | » | » |
| 11 | Գալուստեան Աղաւնի | » | 15 | » | » |
| 12 | Բաղդասարեան Ոսկեհատ | Քոել | 9 | » | » |
| 13 | Մանուկեան Սաթենիկ | Բերդակ | 9 | » | » |
| 14 | — Ազատուհի | » | 6 | ոչ | » |
| 15 | Յովհաննիսեան Թագուհի | Վառնա | 11 | այո | » |
| 16 | Սարգսեան Հրանոյշ | Հայոց Զոր | 11 | ոչ | » |
| 17 | — Նարգիզ | » | 9 | » | » |
| 18 | Տիգրանեան Իսկուհի | Սեան | 5 | » | » |
| 19 | Յովհաննիսեան Մայրիկ | Վան | 5 | » | » |
| 20 | Խաչիկեան Անժէլ | » | 9 | այո | » |
| 21 | Միհրանեան Լուսիկ | Պատի գիւղ | 9 | » | » |
| 22 | Պետրոսեան Ազնիւ | Բաշգալէ | 6 | ոչ | » |
| 23 | Մարտիրոսեան Աղաւնի | Խոսպ | 9 | այո | » |
| 24 | Մանուկեան Նուբար | » | 9 | » | » |
| 25 | Վարդանեան Ազատուհի | Արճակ | 9 | » | » |
| 26 | Գէորգեան Ալմա | Քոչան | 10 | » | » |
| 27 | Աստուածատրեան Թագուհի | Գոշավանք | 7 | » | » |
| 28 | Խաչատուրեան Նոյեմզար | Առինջ | 6 | ոչ | ոչ |
| 29 | Լեւոնեան Հայկանոյշ | Գաւաշ | 7 | այո | » |
| 30 | Սիմոնեան Կաքաւ | Վան | 5 | ոչ | » |
| 31 | Մելքոնեան Մարգարիտ | Խժէժ | 6 | » | » |
| 32 | Մովսէսեան Զարուհի | Վանձեղ | 5 | » | » |
| 33 | Աւետիսեան Ջերո | Խմբից | 6 | » | » |
| 34 | Խաչիկեան Գինո | Միղա | 6 | » | » |
| 35 | Հայրիկեան Լելո | Քոելա | 4 | » | » |
| 36 | — Շողակաթ | Բերկրի | 4 | » | » |
| 37 | Բաղդասարեան Նունուշ | Փիր բաղալա | 3 | » | » |
| 38 | — Սիրուշ | — | 4 | » | » |
| 39 | Յարութիւնեան Նեկտար | Բիթլիս | 5 | » | » |
| 40 | Աբրահամեան Վարսենիկ | Խորգոմ | 6 | » | » |
| 41 | Յովհաննիսեան Նուբար | Կուռուպաշ | 7 | » | » |
| 42 | Մկրտչեան Մարիամ | Խիզան | 7 | » | » |
| 43 | Թորոսեան Մաքրուհի | — | 9 | » | » |

| | | | | | |
|---|---|---|---|---|---|
| 44 | Գէորգեան Մարգարիտ | Խժէժ | 8 | այո | » |
| 45 | Մովսէսեան Հայկանոյշ | Կուէր | 9 | » | » |
| 46 | Գրիգորեան Վարդիթեր | Կարկառ | 6 | ոչ | » |
| 47 | Ղազարեան Ոսկի | Կանճառ | 6 | " | » |
| 48 | Պօղոսեան Զինա | Խլաթ | 9 | այո | » |
| 49 | Եղոյեան Սուսան | Պողոսա | 7 | ոչ | » |
| 50 | Աւետիսեան Եթար | | 7 | այո | » |
| 51 | Պօղոսեան Մաքրուհի | | 9 | » | " |
| 52 | Ղազարեան Անուշ | Ազգան | 9 | » | » |
| 53 | Պետրոսեան Եղիսաբեթ | | 7 | » | » |
| 54 | Սիմոնեան Մաքրուհի | Պառի գիւղ | 11 | այո | » |
| 25 | Կարապետեան Մաքրուհի | Ղուռիբաշ | 6 | ոչ | մայր |
| 56 | Մուրադեան Մարիամ | Խաչան | 15 | այո | ոչ |
| 57 | » Բասեն | » | 9 | | |
| 58 | Սարգսեան Արաքսի | Խորգոմ | 11 | այո | մայր |
| 59 | Յովսէփեան Վարսենիկ | Վան | 12 | » | » |
| 60 | Յովսէփեան Սիրուն | " | 8 | ոչ | » |
| 61 | Տէր-Կարապետեան Արշալոյս | Սխգա | 10 | " | ոչ |
| 62 | Օվասափեան Լուսիկ | Խաչան | 15 | այո | » |
| 63 | — Ռեհան | " | 13 | | |
| 64 | — Գիւլօ | » | 6 | | |
| 65 | Մուրադեան Նուբար | » | 10 | այո | |
| 66 | Մանուկեան Աննա | » | 10 | այո | |
| 67 | Պետրոսեան Ազնիւ | Կանկաւոր | 15 | ոչ | ոչ |

*Կ. Հ. Բ. Ընկերութեան Բաթումի որբանոցի որբերի ցուցակը*

*Սեպտեմբերի 1-ին 1916 թ.*

| | | | | |
|---|---|---|---|---|
| 1 | Վերժին — | Յովհաննէս | Պօլթէրէ Տր. շրջ. | 6 |
| 2 | Լևոն — | — | Տրապիզոն | 4 |
| 3 | Սիմոն — | — | " | 4 |
| 4 | Արմենակ | Յակոբ | Անիֆա Տր. շրջ. | 4 |
| 5 | Էլմաս Թորաթեան | Պօղոս | Տրապիզոն | 10 |
| 6 | Յարութիւն Անանիկեան | Մկրտիչ | " | 12 |
| 7 | Գրիգոր Անանիկեան | Մկրտիչ | " | 6 |
| 8 | Աննիկ Կոճամանեան | — | Պարեան Տր. շրջ. | 6 |
| 9 | Աւրինէ Կոճամանեան | — | » | 4 |
| 10 | Արշակ — | — | Տրապիզոն | 4 |
| 11 | Յովսէփ Յովսէփեան | Ադամ | Ճօշարա Տր. շրջ. | 18 |
| 12 | Անյայտ — | — | Տրապ. շրջ. | — |
| 13 | Անյայտ — | — | » | — |
| 14 | Անյայտ — | — | " | — |
| 15 | Խորէն Լուցանեան | Միսակ | Էրկի. Բար. շրջ. | 8 |
| 16 | Արշալոյս Քէֆինսիզեան | Պօղոս | Կիւմիւշխանէ | 12 |
| 17 | Բաղդասար Նարլեան | Խաչիկ | Ակօցի | 10 |
| 18 | Միքայէլ Յովհաննիսեան | Յակոբ | Քելքեթ | 12 |
| 19 | Աբրահամ Բոթիկեան | Յովհաննէս | Երզնկա | 10 |
| 20 | Գալուստ Բոթիկեան | Յովհաննէս | » | 8 |
| 21 | Յովսէփ Աբրահամեան | Սեդրաք | Աֆիանց Տր. շրջ. | 10 |
| 22 | Սիրանոյշ Յակոբջանեան | Յակոբ | Տրապիզոն | 8 |
| 23 | Սարգիս Քեահեաեան | Արամ | « | 12 |
| 24 | Իմաստուհի Զարմանեան | Խաչիկ | Կիւմիւշխանէ | 16 |
| 25 | Հրանտ Քէշիշեան | Եղիա | Սամարուգա Տր. շրջ. | 6 |
| 26 | Յասմիկ Բէշտմալճեան | Արմենակ | Մարզվան | 3 |
| 27 | Զուարդ Տօնապետեան | Մաթէոս | Բաբերդ | 4 |
| 28 | Սուրէն Օհանեան | Թորոս | Կիւրեն | 12 |
| 29 | Նուբար Օհանեան | Թորոս | « | 4 |

| | | | | |
|---|---|---|---|---|
| 30 | Վահան Քեահեաեան | Աւետիս | Սիւրմենէ | 6 |
| 31 | Աշոտ Խաչատրեան | Յարութիւն | Բլրակ Բաբ. շրջ. | 15 |
| 32 | Անահիտ Բէլումպալճեան | Արմենակ | Մարզվան | 4 |
| 33 | Անյայտ (աղջիկ) — | — | — | — |
| 24 | Մանուկ — | — | — | — |
| 35 | Աղնիւ Մաւեան | Պօղոս | Կիւմիւշխանէ | 13 |
| 36 | Աղնիւ — | Եղիա | Պալախորք | 10 |
| 37 | Աղնիւ — | Երիս | Զամանց Բաբ. շրջ. | 8 |
| 38 | Կատերինա — | Թովմաս | Տրապիզոն | 4 |
| 39 | Անյայտ (աղջիկ) — | — | — | 3 |
| 40 | Յակոբ — | — | — | 6 |
| 41 | Հայկ — | — | — | 4 |
| 42 | Վարսենիկ — | — | — | 4 |
| 43 | Ալեքսան Ամիրեան | Պօղոս | Շանչեղի | 19 |
| 44 | Գարեգին Մարկոսեան | Գալուստ | Վան | 7 |
| 45 | Հայկանուշ Ամիրեան | Աստատուր | Ակն | 14 |
| 46 | Սարգիս Ամիրեան | Աստատուր | » | 6 |
| 47 | Մանուկ Աղայեան | — | Տրապիզոն շրջ. | 5 |
| 48 | Արամ — | — | — | 4 |
| 49 | Յովհաննէս Ուղուրեան | Մկրտիչ | Տրապիզոն | 8 |
| 50 | Հանրի Ուղուրեան | Մկրտիչ | " | 5 |
| 51 | Բարկէն — | — | — | 4 |
| 52 | Հայկանուշ Այվազեան | — | Տրապիզոն | 16 |
| 53 | Հեղանուշ — | — | — | 3 |
| 54 | Խաչատուր Ռուսայեան | Փիլիպպոս | Բայբուրդ | 12 |
| 55 | Խաչատուր Սարաճեան | Աստատուր | Կիւմիւշխանէ | 12 |
| 56 | Յարութիւն Գիւլայեան | Նիկողոս | " | 11 |
| 57 | Յովակիմ Ուստայեան | Յովհաննէս | Բաբերդ | 13 |
| 58 | Միհրան Խաչատուրեան | Կարապետ | Շէյրան | 12 |
| 59 | Մկրտիչ Սրխասեան | Գալուստ | Վարզան | 12 |
| 60 | Յովսէփ Եսայեան | — | Տրապիզոն | 12 |
| 61 | Արաքսիա Այվազեան | Մովսէս | ՕքրոպակերտԱրթ շրջ. | 8 |
| 62 | Ստեփան Կիւրեղեան | — | Շէյրան | 14 |
| 63 | Եփրեմ Ասլանեան | — | Արիակ | 15 |
| 64 | Օննիկ Միքայէլեան | — | Երզնկա | 10 |
| 65 | Էրնէստին Զինկրեան | — | Տրապիզոն | 10 |
| 66 | Աշխէն Կուզիկեան | Նահապետ | Բաբերդ | 14 |